# ԴՐՈՇՆԵՐ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Փողփողում են նորից
Ալ դրոշներն իմ դեմ,
Նրանք փոքրիկ ու մեծ
Պատմություններ գիտեն:
Ու պահում են իրենց
Ծփանքի մեջ ծալ-ծալ
Առասպելներ լույսի
Եվ լեգենդներ պայծառ:
Մանկիկների ձեռքին
Թևածում են նրանք
Հեքիաթային կարմիր
Թռչնակների նման:
Եվ պտում են կարծես.
Դե, մեծացե՛ք, բալե՛ք,
Երգեք ուրախ այդպես
Եվ համարձակ քայլեք:
Կրունկներով ամուր
Կուրծքը թակեք հողի,
Ձեր երազին մաքուր
Մենք կբացենք ուղի:
Ու մեր երկրի կրծքին
Դրոշները բոսոր
Շողշողում են կարմիր
Վահանի պես հզոր:
Եվ ասում են՝ հիշե՛ք,
Անցյալը մեր հիշե՛ք.
Մենք հաղթել ենք մութին
Մի փոթորկոտ գիշեր:
Մենք դարձել ենք հավատ
Ու շողարձակ արև:
Բախտի կրակն անմար
Թեժ խարույկ ենք արել,
Եվ ազգերը սրտանց
Մեր ալ գույնն են երգում,
Կարմիր դրոշ բռնած՝
Նոր աշխարհը կերտում:

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ




Բարձր-լեռնային հանրապետություն են անվանում Կիրգիզիան: Նրա տարածության մեծ մասը զբաղեցնում է Տյան-Շանը՝ «Երկնային լեռները», որի ամենաբարձր գագաթը Հաղթանակի պիկն է (7439 մ): Հիացմունք են պատճառում հավերժական ձյունով պատած լեռնաշղթաները, արագահոս գետերով կիրճերը և կապույտ լճերը: Լեռների լանջերին փռված հյութալի արոտավայրերում արածում են ձիերի, ոչխարների, այծերի հոտերը: Իսսիկ-Կուլ լճի ափին է գտնվում «Չոլպոն Աթա» մանկական առողջարանը, որը հայտնի է նաև «Կիրգիզական Արտեկ» անունով:

Կիրգիզիայի ընդերքը հարուստ է օգտակար հանածոներով: Այստեղ է գտնվում Միջին-Ասիական քարածխի ամենախոշոր հանքավայրը, մեր երկրի ծարիրի-սնդիկի ամենահարուստ պաշարները: Կա նաև նավթ, գազ, երկաթ, ոսկի, անագ:

Շատ քիչ են Կիրգիզիայի հողագործության համար պիտանի տարածությունները: Սովետական իշխանության տարիներին խամ ու խոպան հողերը մաքրվել են քարերից ու մացառներից, ջրանցքներ են կառուցվել, և այժմ այդտեղ ծփում են ցորենի, բրնձի արտերը, սպիտակին են տալիս բամբակի դաշտերը: Հանրապետությունը հռչակված է նաև ընկուզենու վիթխարի անտառներով:

Կիրգիզիայում կան բազմաթիվ խնձորի այգիներ և տարեցտարի նրանք ավելի են շատանում:

# ԿԻՐԳԻԶԱԿԱՆ ՍՍՀ



Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ, յուրաքանչյուր դպրոցամերձ այգում աշակերտները տնկեցին խնձորի հարյուր ծառ: Երեխաները նրանց շուրջը փխրեցնում էին հողը, ջրում, վնասատուներից պաշտպանելու համար՝ սպիտակեցնում բները: Այժմ այդ ծառերը մեծացել են և բերք են տալիս: Կիրգիզ դպրոցականները մի ուրիշ լավ ավանդույթ էլ ունեն. ամեն տարի ապրիլին, առաջնորդի ծննդյան օրը, նրանք գնում են լեռները և հրակարմիր վարդկակաչներ են հավաքում: Վարդկակաչներից փնջեր են կապում, դնում հերոսների հուշարձանների վրա, նվիրում աշխատանքի առաջավորներին, ուսուցիչներին: Իսկ ամենալավ և ամենամեծ փունջը ուղարկում են Մոսկվա, որը մայրաքաղաքի նրանց ընկերները դնում են Վ. Ի. Լենինի դամբարանին:




*ՉԻՆԳԻԶ ԱՅՏՄԱՏՈՎ*

*Այս պատահել է շա՜տ, շատ վաղուց: Հի՜ն, շատ հի՜ն ժամանակներում, երբ աշխարհում անտառներն ավելի շատ էին, քան խոտերը, իսկ ջուրը մեր կողմերում ավելի շատ էր, քան ցամաքը: Մեծ ու սառնորակ գետի ափին ապրում էր մի կիրգիզական ցեղ: Այդ գետը Էնեսայ էր կոչվում: Հոսում է նա այստեղից հեռու՝ Սիբիրում: Ձիով երեք տարի ու երեք օր է պետք, որ հասնես այնտեղ: Այդ գետը հիմա կոչվում է Ենիսեյ, իսկ այն ժամանակ նա Էնեսայ էր կոչվում և նրա մասին այսպիսի երգ կար.*

*Կա՞ գետ, որ լայն լինի քեզնից, Էնեսա՛յ,*
*Կա՞ հող քեզնից հարազատ, Էնեսա՛յ,*
*Կա՞ վիշտ, որ խոր լինի քեզնից, Էնեսա՛յ,*
*Կա՞ ազատություն քո ազատությունից ավելի,*
*Էնեսա՛յ:*

*Չկա գետ, որ լայն լինի քեզանից, Էնեսա՛յ,*
*Չկա հող քեզանից հարազատ, Էնեսա՛յ,*
*Չկա վիշտ, որ խոր լինի քեզանից, Էնեսա՛յ,*
*Չկա ազատություն քո ազատությունից ավելի,*
*Էնեսա՛յ:*

*Ահա այսպիսին էր Էնեսայ գետը:*

*Այն ժամանակ Էնեսայի ափերին տարբեր ժողովուրդներ էին ապրում: Ծանր էր նրանց կյանքը, քանի որ ապրում էին մշտական թշնամանքի մեջ: Շատ թշնամիներով էր շրջապատված կիրգիզ ցեղը: Մեկ սա էր հարձակվում, մեկ՝ նա, մեկ կիրգիզներն իրենք էին ուրիշների վրա տալիս, քշում տավարը, տներն այրում, կոտորում մարդկանց: Կոտորում էին բոլորին, ում հասներ. այսպիսի ժամանակներ էին: Մարդը մարդուն չէր խղճում: Մարդը մարդուն ոչնչացնում էր: Բանն այնտեղ էր հասել, որ չկար ցանք անող ու անասուն բազմացնող, որսի գնացող: Թալանելով հեշտ էր ապրելը՝ գալիս է սպանում, հավաքում տանում: Իսկ սպանվածի արյան դիմաց ավելի շատ արյուն պետք էր թափել, և վրեժի դիմաց՝ ավելի շատ վրեժ: Ու գնալով ավելի էր արյուն թափվում: Մթագնել էր մարդկանց բանականությունը: Թշնամիներին իրար հետ հաշտեցնել չկար: Ամենախելոքն ու լավը նա էր համարվում, ով կարողանում էր թշնամուն հանկարծակիի բերել, օտար ցեղի մինչև վերջին մարդը կոտորել, հափշտակել հոտն ու հարստությունը:*

*Մի օր էլ Տայգայում մի տարօրինակ թռչուն հայտնվեց: Գիշերները մինչև լույս երգում, լալիս էր մարդ-*

կային կեղեքող ձայնով, խոսում, խոսխոսում, ճյուղից-ճյուղ թռչելով. «Մեծ դժբախտություն է լինելու, մեծ դժբախտություն է լինելու»: Այդպես էլ եղավ. վրա հասավ այդ սարսափելի օրը:

Այդ օրը Էնեսայի կիրգիզական ցեղը թաղում էր իր հնագույն առաջնորդին: Բատիր Կուլչեյը շատ ու շատ տարիներ առաջնորդել էր նրանց, շատ արշավանքներ էր կատարել և աջ ու ձախ փրթել: Կռիվների մեջ ողջ մնաց, բայց ահա և հասավ նրա մեռնելու օրը: Երկու օր ցեղակիցները մեծ վշտի մեջ էին, իսկ երրորդ օրը հավաքվեցին բատիրի աճյունը հողին հանձնելու:

Այդ առավոտ արևն արդեն օրվա իր ճանապարհն էր բռնել, երբ ավարտվեցին բոլոր նախապատրաստությունները: Դուրս էին հանել բունչուկները՝ կոթի վրա ձիու պոչի մազափնջեր, դուրս էին հանել առաջնորդի զենք ու զրահը՝ նիզակ ու վահան: Նրա ձին ծածկել էին սգո ծածկոցով: Փողհարները պատրաստվում էին հնչեցնելու մարտական փողերը, թմբկահարները թմբուկ զարկելու, այնպես, որ Տալգան գրնգվեր, որ թռչունները խուռներամ նետվեին երկինք և պտտվեին աղմուկ-աղաղակով ու հառաչանքով, որպեսզի գազանը ոռնոցով վազեր թավուտ, որպեսզի կանաչը կպչեր գետնին, որպեսզի արձագանքը դղրդար լեռներում, որպեսզի լեռները ցնցվեին: Լալկան կանայք արձակել էին մազերը, որպեսզի լալով Կուլչեյ բատիրի գովքն անեն: Ջիգիթները մի ծունկը գետնին տվին, որպեսզի իրենց հաղթ ուսերին առնեն նրա անշունչ մարմինը: Բոլորը պատրաստ սպասում էին բատիրի դուրս բերելուն: Իսկ անտառի բացատում կապված էր տասը զամբիկ՝ զոհաբերելու համար, տասը արջառ, ինն անգամ իննական ոչխար՝ հոգեհացի համար:

Ու այդ ժամանակ տեղի ունեցավ անսպասելի մի բան: Ինչպիսի թշնամություն էլ որ լիներ Էնեսայցիների միջև, ընդունված չէր առաջնորդի թաղման ժամանակ կռիվ գնալ հարևանի վրա: Բայց ահա թշնամու զորախմբերը լուսաբացին աննկատելի շրջապատելով սգի մեջ գտնվող կիրգիզների իջևանատեղը, թաքստոցներից միանգամից դուրս թափվեցին այնպես, որ ոչ մեկը չհասցրեց ձի թամբել, ոչ մեկը չհասցրեց զենք վերցնել: Եվ սկսվեց չտեսնված կոտորած: Մեկ առ մեկ բոլորին կոտորեցին: Այդպես էր ծրագրել թշնամին. մի հարվածով ոչնչացնել կիրգիզների հանդուգն ցեղը: Բոլորին անխտիր սպանել, որպեսզի ոչ ոք չմնա, որպեսզի չհիշվի այդ ոճրագործությունը, որպեսզի չմնա մեկը, որ վրեժ լուծի, որպեսզի ժամանակն անցյալի հետքերը ավազով ծածկի. ո՞վ գիտի՝ եղել է, թե՞ չի եղել:

Հարուստ ավարով թշնամին հեռացավ և չնկատեց, թե ինչպես անտառից վերադարձան երկուսը՝ մի աղջիկ ու մի տղա: Անհնազանդ ու չարաճճի երեխաներ էին, դեռ առավոտյան ծնողներից ծածուկ վազել էին մոտակա անտառը՝ զամբյուղացու ծառի կեղև բերելու: Խաղով տարված, չէին նկատել, թե ինչպես խորացել էին անտառում: Իսկ երբ լսեցին կոտորածի աղմուկ-աղաղակը, ետ վազեցին՝ ողջ չգտան ո՛չ իրենց հայրերին, ո՛չ մայրերին, ո՛չ եղբայրներին ու քույրերին: Հեռվում փոշու ամպ էր բարձրանում, թշնամին քշում տանում էր արյունալի հարձակումով հափշտակած երամակներն ու նախիրները:

Տեսան երեխաները սմբակների բարձրացրած փոշին և վազեցին այն կողմ: Լալով ու ձայն տալով վազում էին նրանք վայրագ թշնամու ետևից:

Երկար, հուսակտուր վազեցին տղան ու աղջիկը: Բայց այնպես էլ հասնել չկարողացան: Հետո ընկան գետնին: Սեղմվեցին մեկը մյուսին և չիմացան, թե ինչպես քնեցին:

Իզուր չեն ասում, թե որբն ունենում է յոթը բախտ: Գիշերն անցավ անվտանգ: Գազանները նրանց ձեռք չտվեցին, անտառային վհուկները չգողացան նրանց: Իսկ երբ արթնացան, առավոտ էր: Արևը շողում էր, թռչունները ճռվողում էին: Վեր կացան նրանք, հափշտակիչների հետքերը բռնեցին ու գնացին: Ճանապարհին պտուղ և արմտիք էին հավաքում: Գնացի՜ն, գնացի՜ն, երրորդ օրը կանգ առան լեռան գլխին: Նայեցին ցած՝ ընդարձակ կանաչ մարգագետնում կերուխում էր: Քանի՜ յուրտ էր դրված՝ հաշիվ չկար, քանի՜ խարույկ էր ծխում՝ հաշիվ չկար, ինչքա՜ն մարդ կար խարույկների շուրջը՝ հաշիվ չկար: Աղջիկները ճոճերի մեջ ճոճվելով երգում էին: Փահլևանները ժողովրդին զվարճացնելու համար արծիվների պես պտըտվում ու գետնում էին մեկը մյուսին: Թշնամին տոնում էր իր հաղթանակը:

Տղան ու աղջիկը կանգնեցին սարի գլխին, չհամարձակվեցին առաջ գնալ: Բայց շատ էին ուզում խարույկի մոտ լինել, այնտեղից խաշլամայի, հացի, վայրի սոխի այնպիսի գրգռող բուրմունք էր գալիս:

Երեխաները չդիմացան, իջան սարից: Տեր ու տիրականները նրանց որ տեսան, զարմացան, խմբվելով շրջապատեցին նրանց.

— Ովքե՞ր եք, որտեղի՞ց:

— Մենք քաղցած ենք,— պատասխանեցին տղան ու աղջիկը, —ուտելու բան տվեք մեզ:

Նրանց խոսելուց հասկացան, թե ովքեր են: Սկըսեցին աղմկել, գոռգոռալ, վիճել. «Սպանե՞լ թշնամու ողջ մնացած այս սերմը, անմիջապե՞ս, թե՞ տանել խանի մոտ»: Բոլորը խաղերն ու քեֆերը ձգեցին, ահագին բազմությամբ վազեցին դեպի խանի յուրտը: Խանն այդ ժամանակ բազմած էր ձյան պես ճերմակ թաղիքին, իր անվանի ռազմիկների հետ: Մեղրախա-



ոըն կումիս էր խմում, փառաբանության երգեր լսում: Երբ խանն իմացավ, թե ինչու են եկել իր մոտ, սաստիկ զայրացավ. «Ինչպե՞ս համարձակվեցիք անհանգըստացնել ինձ: Ինչի՞ց եք վախենում, թշվառականնե՛ր, մի տեսե՛ք, թե ովքեր են ձեր առաջ: Հե՜յ, Չոփո՛ւռ Չոլախ պառավ,— ձայնեց խանը և ասաց նրան, երբ նա դուրս եկավ ամբոխի միջից,— սրանց տար Տայգա և այնպես արա, որ դրանով կիրգիզական ցեղը վերջանա, որպեսզի նրանից հետք չմնա, որպեսզի նրա անունը հավիտյանս հավիտենից մոռացվի: Գնա՛, Չոփո՛ւռ Չոլախ պառավ, արա՛ այնպես, ինչպես հրամայեցի»:

Չոփուռ Չոլախ պառավը լուռ հնազանդվեց, բըռնեց տղայի ու աղջկա ձեռքը և տարավ նրանց: Նրանք երկար գնացին անտառով, հետո դուրս եկան Էնեսայի ափը, մի բարձր քերծի գլխի կանգնեցին: Այստեղ Չոփուռ Չոլախ պառավը երեխաներին կողք-կողքի կանգնեցրեց և նրանց ցած հրելուց առաջ խոսեց.

— Օ՜, հզոր Էնեսա՛յ գետ, եթե սար նետեն քո մեջ՝ կսուզվի քարի պես, եթե հարյուրամյա սոճի նետեն քո մեջ՝ կքշես նրան տաշեղի պես: Ընդունիր քո գիրկը երկու փոքրիկ ավազահատիկ՝ մարդ արարածի երկու մանուկ: Երկրի վրա նրանք տեղ չունեն: Ես չեմ ասելու, որ դու իմանաս, Էնեսա՛յ: Վերցրո՛ւ նրանց, վերցրո՛ւ նրանց, մե՜ծդ Էնեսայ...

Լաց են լինում, հեկեկում են տղան ու աղջիկը: Պառավի խոսքը նրանց ինչի՞ն էր պետք, երբ քերծից ցած նայելիս սոսկում էին: Ցածում ալիքները գազազած իրար շալակ էին ելնում:

— Գրկե՛ք իրար, երեխանե՛ր, վերջին անգամ մնաս բարո՛վ ասեք իրար,— ասաց Չոփուռ Չոլախ պառավը, իսկ ինքը թևքերը քշտեց, որպեսզի հարմար լինի նրանց անդունդ նետելը: Եվ ասաց.— Դե՛, ինձ էլ ներեցե՛ք, զավակնե՜րս: Ձեզ էլ այս է վիճակված: Թեպետ ո՛չ իմ կամքով, բայց ձեր օգտի համար է...

Այս խոսքերը նա ասաց-չասաց, մեկ էլ կողքին մի ձայն լսվեց.

— Կա՛ց, մե՜ծ ու իմաստուն կին, անմեղ երեխաներին մի՛ կործանի:

Չոփուռ Չոլախ պառավը ետ նայեց, նայեց ու ապշեց. կանգնած էր նրանց առջև Մայր եղջերուն, եղնիկների մայրիկը: Այնպիսի մեծ-մեծ աչքեր ուներ նա, նայում էր այնպես կշտամբանքով ու տխուր: Եղջերուն սպիտակ էր, ինչպես կաթի խեժը: Փորը ծածկված էր գորշ աղվամազով, մատղաշ ուղտի աղվամազի նման, եղջյուրները, աստվա՜ծ իմ, ինչպիսի՜ գեղեցկություն, ոնց որ աշնանային ճյուղատարած ծառի ճյուղերը:

— Ո՞վ ես դու, ինչպե՞ս է, որ դու խոսում ես մարդկային լեզվով,— հարցրեց Չոփուռ Չոլախ պառավը:

— Ես Եղջերու մայրիկն եմ,— պատասխանեց նա,— իսկ այսպես եմ խոսում, որովհետև այլ կերպ դու ինձ չես հասկանա և չես լսի:

— Ի՞նչ է ուզածդ, Եղջերո՛ւ մայրիկ:

— Բա՛ց թող երեխաներին, մե՜ծ ու իմաստուն կին: Խնդրում եմ քեզ, նրանց ի՛նձ տուր:

— Նրանք քո ինչի՞ն են պետք:

— Իմ ձուխտակներին, իմ զույգ եղնիկներին մարդիկ սպանեցին: Ես ինձ համար երեխաներ եմ որոնում:

— Դու ուզում ես նրանց կերակրե՞լ:

— Այո՛, մեծ ու իմաստուն կին:

— Բայց դու լա՞վ ես մտածել, Եղջերո՛ւ մայրիկ,— ծիծաղեց Չոփուռ Չոլախ պառավը,— չէ՞ որ նրանք մարդու երեխաներ են: Նրանք կմեծանան ու կսպանեն քո երեխաներին:

— Երբ մեծանան, նրանք իմ երեխաներին չեն սպանի,— պատասխանեց եղնիկների մայրը,— ես նրանց մայրը կլինեմ, իսկ նրանք՝ իմ երեխաները: Մի՞թե նրանք կսպանեն իրենց քույրերին ու եղբայրներին:

— Է՜հ, մի՛ ասի, Եղջերո՜ւ մայրիկ, դու մարդկանց չգիտես,— գլուխն օրորեց Չոփուռ Չոլախ պառավը,— ոչ միայն անտառի գազաններին, նրանք իրար էլ չեն խղճում: Այս որբերին ես կտայի քեզ, որպեսզի ինքդ տեսնեիր, որ ճշմարիտ են իմ խոսքերը, բայց մարդիկ սրանց էլ քեզ մոտ կսպանեն: Ինչո՞ւ վշտիդ նոր վիշտ ավելացնես:

— Ես երեխաներին կտանեմ հեռու երկիր, որտեղ նրանց ոչ ոք չի գտնի: Խնայի՛ր երեխաներին, մե՜ծ ու իմաստուն կին, բա՛ց թող նրանց: Ես հավատարիմ մայր կլինեմ նրանց համար: Կուրծքս լցվել է, իմ կաթը լաց է լինում, երեխաներ է ուզում իմ կաթը:

— Դե՛ ի՜նչ արած, որ այդպես է...— միտք արավ ու ասաց Չոփուռ Չոլախ պառավը,— վերցրո՛ւ նրանց



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

և շուտ տար: Քո հեռու երկիրը տար որբերին: Բայց եթե երկար ճանապարհին նրանք մեռնեն, եթե հանդիպած ավազակները սպանեն նրանց կամ եթե այդ երեխաները անշնորհակալ գտնվեն քո նկատմամբ, մեղքը քո վիզը:

Շնորհակալություն հայտնեց Եղջերու-մայրիկը Չոփուռ Չոլախ պառավին, իսկ տղային ու աղջկան ասաց.

— Հիմա ես ձեր մայրիկն եմ, իսկ դուք՝ իմ երեխաները: Ես ձեզ տանելու եմ հեռու երկիր, ուր ձյունագագաթ անտառապատ լեռների միջև պառկած է տաք Իսսիկ-Կուլ ծովը:

Ուրախացան տղան ու աղջիկը, կայտառորեն վազ տվեցին Եղջրավոր եղնիկ-մայրիկի ետևից: Բայց հետո նրանք հոգնեցին, թուլացան, իսկ ճամփան եր-

կար էր, ձգված աշխարհի մի ծայրից մյուսը: Նրանք այդքան հեռու չէին գնա, եթե Եղջրավոր եղնիկ-մայրիկը նրանց իր կաթով չկերակրեր, գիշերները չտաքացներ իր մարմնով: Երկա՜ր գնացին նրանք: Գնալով՝ հեռվում մնաց հին հայրենիքը, բայց և նորը՝ մինչև Իսսիկ-Կուլ, դեռ շատ ճամփա կար: Ամառ ու ձմեռ, գարուն ու ամառ և ձմեռ, նորից ամառ ու ձմեռ, նորից գարուն, նորից ամառ ու աշուն գնացին նրանք դարավոր անտառների միջով, կիզիչ տափաստաններով, շարժուն ավազների վրայով, բարձր սարերով ու կատաղի գետերի միջով: Գայլերի ոհմակ ընկավ նրանց ետևից, բայց Եղջրավոր եղնիկ-մայրիկը երեխաներին իր մեջքին առավ ու փախցրեց անգութ գազաններից, որսորդներ ընկան նրանց ետևից, ձիեր նստած, նետ-աղեղով, և ձայն տվին. «Եղջերուն մարդու երեխաներ է փախցրել, բռնեցե՜ք», և նետեր էին արձակում: Նաև դրանցից՝ այդ անկոչ փրկարարներից ազատեց Եղջրավոր եղնիկ-մայրիկը նրանց: Սլանում էր նա նետից արագ, միայն շշնջում էր. «Պինդ բռնեք ինձ, բալեքս, մեզ հետապնդում են»:

Եղջրավոր եղնիկ-մայրիկը, վերջապես, իր երեխաներին հասցրեց Իսսիկ Կուլ: Կանգնեցին նրանք լեռան գլխին ու ապշեցին. չորս բոլորը ձյունապատ գագաթներ էին, իսկ կանաչ անտառներով ծածկված լեռների միջև ծփում էր ծովը, ինչքան որ աչքդ կտրում էր:

— Ձեր նոր հայրենիքը ահա սա է,— ասաց Եղջրավոր եղնիկ-մայրիկը,— ապրեք այստեղ. հողը վարեք, ձուկ որսացեք, անասուններ արածացրեք: Ապրեք այստեղ խաղաղությամբ բյուր տարի: Թող երկարի ձեր տոհմը և բազմանա: Թող չմոռանան ձեր հետնորդները այստեղ բերած ձեր լեզուն, թող նրանց համար քաղցր լինի խոսել ու երգել իրենց այդ լեզվով: Ապրեք, ինչպես որ մարդն է ապրում: Իսկ ես շարունակ ձեզ հետ և ձեր երեխաների հետ կլինեմ:

Ահա այսպես, կիրգիզական ցեղի վերջին տղան ու աղջիկը գտան իրենց նոր հայրենիքը օրհնված ու հավերժական Իսսիկ-Կուլում:

Ժամանակն արագ թռավ: Տղան դարձավ ամրակազմ երիտասարդ, իսկ աղջիկը՝ հասուն կին: Եվ այն ժամանակ նրանք ամուսնացան: Իսկ Եղջրավոր եղնիկ-մայրիկը չհեռացավ Իսսիկ-կուլից, ապրեց այստեղի անտառներում:

Մի օր էլ լուսադեմին անսպասելիորեն փոթորկվեց Իսսիկ-Կուլը, աղմկեց: Կնոջ երկունքի ցավերն էին սկսվել. նա տանջվում էր: Տղամարդը վախեցավ, վազեց ժայռն ի վեր և սկսեց բարձր կանչել՝

— Որտե՞ղ ես, Եղջրավո՛ր եղնիկ-մայրիկ, լսո՞ւմ ես, ինչպես է աղմկում Իսսիկ-Կուլը: Աղջիկդ տանջվում է, շուտ հասիր, Եղջրավո՛ր եղնիկ-մայրիկ, օգնիր մեզ...

## ԻՄ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

*ՍՈՒՅՈՒՆԲԱՅ ԷՐԱԼԻԵՎ*

Հավատարիմ բարեկամը
Թանկ է կյանքում ամեն ինչից:
Բարեկամներ ունեմ ես շատ՝
Այնպե՜ս մոտիկ ու սրտակից.
Վարշավայում ու Կիևում,
Բաքվում ու Քիշնևում,
Երևանում, Կրասնոդոնում,
Վաշինգտոնում ու Լոնդոնում...
Տարածությամբ հեռու ենք շատ,
Սրտով՝ մոտիկ ու հարազատ:
Դեպի ինձ են թռչում ահա
Նամակները երանգ-երանգ,
Ինչպես հեռվից լուրեր բերող
Աղավնիներ երամ-երամ:
Հուզմունքով եմ ես բաց անում,
Կարդում, ապա պատասխանում:
Ու նրանց հետ,
Ընկերների հետ այդ մոտիկ ու հեռավոր,
Թվում է ինձ աշխարհը այս
Ավելի ջերմ ու լուսավոր:
Եվ նամակներն այդ նման չեն երբեք իրար,
Ասես մարդիկ լինեն նրանք՝ տարբեր գույնի:
Բայց լուսեղեն մի երազանք
Զուգել է այդ մարդկանց ի մի,
Որ աշխարհում խաղաղություն ընդմիշտ լինի,
Որ դեռ մանկուց բարեկամներ
Ու եղբայրներ լինեն իրար
Զավակները հողագնդի:

*Փոխադր. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ*

Եվ այդ ժամանակ հեռվից լսվեց երփներանգ զանգակների ձայն, որ հիշեցնում էր քարավանի բոժոժների զնգզնգոցը: Գնալով մոտենում էր զանգակի զնգզնգոցը: Վազեվազ գալիս էր Եղջրավոր եղնիկ-մայրիկը: Նա իր եղջյուրներին հագցրած բերում էր բեշեկ՝ օրորոց: Սպիտակ եղևնուց էր օրորոցը, վրան արծաթ զանգակ:

Կանչի վրա հենց որ հայտնվեց Եղջրավոր եղնիկ-մայրիկը, կինը ծննդաբերեց.

— Այս օրորոցը ձեր նորածնի համար է,— ասաց Եղջրավոր եղնիկ-մայրիկը,— դուք շատ երեխաներ կունենաք՝ յոթ տղա, յոթ աղջիկ:

Հայրն ու մայրն ուրախացան: Եղջրավոր եղնիկ-մայրիկի պատվին իրենց առջնեկին կոչեցին Բուգու-

բալ: Մեծացավ Բուգուբալը և ամուսնացավ կիպչակների ցեղից մի գեղեցկուհու հետ և Բուգու տոհմը՝ Եղջրավոր եղնիկ-մայրիկի տոհմը սկսեց բազմանալ: Մեծ և ուժեղ դարձավ բուգուների տոհմը Իսսիկ-Կուլում: Եղջրավոր եղնիկ-մայրիկին բուգուները պաշտում էին իբրև սրբի: Բուգուական յուրտերի մուտքի վրա ասեղնագործեցին եղջերուի եղջյուր, որպեսզի հեռվից երևա, որ յուրտը պատկանում է բուգու տոհմին: Երբ բուգուները դիմադրում էին թշնամու ասպատակություններին, երբ ձիարշավների մրցումների էին ելնում, հնչում էր կանչը՝ «Բուգու», և բուգուականները հաղթող էին դուրս գալիս: Իսկ Իսսիկ-կուլյան անտառներում այն ժամանակ թափառում էին ճերմակ եղջրավոր եղնիկներ, որոնց գեղեցկությանը երկնքի աստղերն էին նախանձում: Դրանք Եղջրավոր եղնիկ-մայրիկի երեխաներն էին: Նրանց ոչ ոք ձեռք չէր տալիս: Եղնիկ երևալիս՝ բուգուականը իջնում էր թամբից, ճանապարհ տալիս նրան:

Այսպես էր, քանի չէր մեռել մի մեծահարուստ, մեծահամբավ բուգուական: Նա ուներ բյուրավոր ոչխարներ, բյուրավոր ձիեր, իսկ շուրջը բոլոր մարդիկ նրա հովիվներն էին: Նրա որդիները մեծ հոգեհաց տվին: Քելեխի հրավիրեցին աշխարհի բոլոր ծայրերից նշանավոր մարդկանց: Հյուրերի համար Իսսիկ-Կուլի ափերին հազար-հազար յուրտ խփեցին: Հաշիվ չկար, թե քանի անասուն մորթեցին, ինչքան կումիս խմվեց, ինչքան խորտիկներ մատուցվեցին: Հարուստի որդիները գոռոզ-գոռոզ ման էին գալիս. թող մարդիկ իմանան, թե ինչքան հարուստ ու շռայլ զավակներ ունի հանգուցյալը, ինչքան են նրան հարգում, ինչպես են նշում նրա հիշատակը... («Է՜յ, որդյակ իմ, վատ է, երբ մարդիկ փայլում են ոչ թե խելքով, այլ ունեցվածքով»):

Իսկ երգիչները, հանգուցյալի որդիներից նվեր ստացած ընտիր նժույգներին նստած, պճնված նվեր ստացած սկյուռե փափախներով ու մետաքսյա խալաթներով, մի գլուխ փառաբանում էին հանգուցյալին ու նրա որդիներին:

— Արևի տակ ուրիշ որտե՞ղ կտեսնես այսպիսի երջանիկ կյանք, այսպիսի շքեղ հոգեհաց,— երգում էր մեկը:

— Աշխարհիս ստեղծման օրից այսպիսի բան չէր տեսնված,— երգում էր երկրորդը:

— Ուրիշ ոչ մի տեղ, միայն մեզանում են այսպես մեծարում ծնողին,— երգում էր երրորդը:

Եվ այսպես մրցում էին նրանք զօր ու գիշեր:

Հարուստի գոռոզ որդիները շատ էին ուզում ստվերի մեջ թողնել մյուսներին, աշխարհում բոլորին գերազանցել, որպեսզի իրենց համբավը գնա երկրից-երկիր: Եվ մտածեցին իրենց հոր գերեզմանի վրա կանգնեցնել եղջերվի եղջյուր, որպեսզի բոլորն իմանան, որ այստեղ ննջում է Եղջրավոր եղնիկ-մայրիկի տոհմից սերած իրենց փառաբանված նախնին: («Է՜յ, որդյակ իմ, դեռ հնուց ասել են, որ հարստությունը ծնում է գոռոզամտություն, գոռոզամտությունը՝ խելացնորություն»):

Հարուստի որդիները կամեցան իրենց հորը այդ չլսված պատիվը տալ, և ոչինչ նրանց չզսպեց: Ասացին ու արին: Որսորդներ ուղարկեցին, որսորդները եղջերու սպանեցին, սղոցեցին եղջյուրը: Սաժենանոց եղջյուրը ասես սլացող արծիվ լիներ: Եղջերուի եղջյուրը որդիներին դուր եկավ, յուրաքանչյուրի վրա՝ տասնութ ճյուղ, նշանակում է ապրել է տասնութ տարի: Լա՜վն էր: Վարպետներին նրանք հրամայեցին եղջյուրը կանգնեցնել գերեզմանի վրա:

Ծերունիները զայրացան.

— Ի՞նչ իրավունքով սպանեցին եղջերուին: Ո՞վ համարձակվեց ձեռք բարձրացնել Եղջրավոր եղնիկ-մայրիկի հետնորդի վրա:

Հարուստի ժառանգները պատասխանեցին նրանց.

— Եղջերուն խփվել է մեր հողում: Այն ամենը, ինչ քայլում է, սողում, թռչում մեր տիրապետության սահմաններում, ճանճից մինչև ուղտը, մերն է: Մենք ինքներս գիտենք, ինչպես վարվել մեր ունեցածի հետ. Կորեք գնացե՛ք:

Ծառաները ծերունիներին մտրակահարելով, թարս նստեցրին ձիերի վրա և խայտառակելով քշեցին հեռու:

Դրանից էլ սկսվեց: Մեծ դժբախտություն տեղաց Եղջրավոր եղնիկ-մայրիկի սերնդի վրա: Համարյա ամեն մեկը սկսեց անտառներում սպիտակ եղջերուներ որսալ: Բուգուականներից յուրաքանչյուրը պարտքն էր համարում իր նախնիների գերեզմանի վրա եղջերուի եղջյուր կանգնեցնել: Այժմ դա համարվում էր բարի բան, առանձնահատուկ հարգանք մահացածի հիշատակի հանդեպ: Ով չէր կարողանում եղջյուր ձեռք գցել, նրան համարում էին անարժան մարդ: Սկսվեց եղջերուի եղջյուրների առուծախ, սկսեցին ամբարել դրանք: Հանդես եկան Եղջրավոր եղնիկ-մայրիկի տոհմից այնպիսի մարդիկ, որոնք իրենց համար արհեստ դարձրին եղջերուի եղջյուր ձեռք բերելն ու փողով ծախելը»: («Է՜յ, որդյակ իմ, իսկ այնտեղ, ուր փողն է, բարի խոսքը տեղ չունի, գեղեցկությունը տեղ չունի»):

Աղետալի ժամանակներ եկան Իսսիկ-Կուլի անտառների եղջերուների համար: Խնայող չկար նրանց: Եղջերուները փախչում էին դեպի անմատչելի ժայռերը, բայց այնտեղ էլ էին վրա հասնում նրանց: Որսորդական շներ էին արձակում նրանց վրա, որպեսզի եղջերուներին քշեն դեպի դարանակալած նետաձիգները, որոնց արձակած նետը զուր չէր անցնում: Երամակ-

# ԱՇՆԱՆ ԾԱՂԻԿՆԵՐ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Դատարկ են այգի ու դաշտեր,
Մրգաքաղն անցել է վաղուց,
Սարերը ձնել են արդեն,
Խաղողի վազերն են թաղում:

Չվել են թռչուններն հանդի,
Խամրել են գույները վառման,
Կալերում՝ դեզերն են խոտի
Դեռ պահում բուրմունքը ամռան:

Բայց հողը հոգնություն չունի,
Թեև խոր աշուն է հիմա,
Սպիտակ ու դեղին գույնի
Ծաղկում են ծաղիկներն աշնան:

Վախ չունեն նրանք ո՛չ ցրտից
Եվ ո՛չ էլ փաթիլից ճերմակ,
Ժպտում են նրանք անցորդին՝
Ուղեկցող աչքերի նման:



## ԲԱՐԴԻՆ

ԼԻԴԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Ինչո՞ւ է տխրել
Բարդին սլացիկ,
Էլ չի շորորում,
Նայում գեղեցիկ:
Ամռան օրերի
Խնդությունն անվերջ
Տեսնում է հիմա
Նա երազի մեջ:
Շորը ոսկեհուռ
Տարավ խենթ քամին,
Մնաց մերկ, տխուր՝
Ձմեռվա շեմին:
Ինքն իրեն, ասես,
Էլ չի ճանաչում,
Առանց շորերի
Շատ է ամաչում
Ու շրջում դողով.
— Ձմե՛ռ, շո՛ւտ արի,
Քո ճերմակ քողով
Դո՛ւ ինձ պարուրի:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ներով եղջերուներ էին կործանում, կոտորում էին ամբողջ հոտերով: Գրազ էին գալիս, թե ով ավելի բազմաճյուղ եղջյուր կարող է ձեռք բերել:

Եվ եղջերուները վերացան: Լեռները ռատարկվեցին: Այլևս եղջերուի ձայն չէր լսվում ո՛չ կեսգիշերին, ո՛չ լուսաբացին: Այլևս ո՛չ անտառում, ո՛չ բացատում չէիր տեսնի, թե նա ինչպես է արածում, ինչպես է սլանում անդունդի վրայով: Ծնվեցին մարդիկ, որոնք իրենց ողջ կյանքում եղջերու չտեսան: Միայն հեքիաթներ էին լսում նրանց մասին: Մեկ էլ, եղջյուրներ էին տեսնում գերեզմանների վրա:

Իսկ ի՞նչ եղավ Եղջրավոր եղնիկ-մայրիկը:

Նա վիրավորվեց, անասելի վիրավորվեց մարդկանցից: Պատմում են, որ երբ գնդակների ու շների ձեռքից եղջերուների համար ապրելը դարձավ բոլորովին անհնար, երբ մնաց այնքան եղջերու, որ կարելի էր մատների վրա հաշվել, Եղջրավոր եղնիկ-մայրիկը բարձրացավ ամենաբարձր լեռան կատարը, մնաս բարով արավ Իսսիկ-Կուլին և իր վերջին երեխաներին մեծ լեռնանցքով տարավ ուրիշ երկիր, ուրիշ լեռներ:

Ահա թե ինչ բաներ են լինում աշխարհում: Ահա և մեր ամբողջ հեքիաթը: Ուզում ես հավատա, ուզում ես մի՛ հավատա:

Թարգմ. ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆԻ

ԲՈԼՈՐԻ՛Ն, ԲՈԼՈՐԻ՛Ն, ԲՈԼՈՐԻ՛Ն. ԴՊՐՈՒԺԻՆԸՆՆԵ-ՐԻ, ՋՈԿԱՏՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻՆ, ՑՈՒՐԸՔԱՆՉՅՈՒՐ ՊԻՈՆԵՐԸԿԱՆ ՕՂԱԿԻ, ՑՈՒՐԸՔԱՆՉՅՈՒՐ ՊԻՈՆԵՐԻ

# «ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ» ԵՐԹԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

Հուլիսի 29-ին պիոներական հանրապետությունում՝ Արտեկում, բարձրացվեց համամիութենական պիոներական 5-րդ հավաքի ալ դրոշը:

Մեր հայրենիքի 25 միլիոնանոց պիոներիան ուշադիր հետևում էր այստեղ կատարվող իրադարձություններին: Եվ ահա Սև ծովի ափից մեկնարկ վերցրեց «Միշտ պատրաստ» համամիութենական նոր երթը: ՀամԼԿԵՄ Կենտկոմի 6-րդ պլենումը որոշում ընդունեց շարունակել երթը և այն նվիրել ՍՍՀՄ կազմավորման և կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները Վ. Ի. Լենինի անվամբ կոչելու 50-ամյակներին:

**ԵՐԹԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ**. 1972թ. օգոստոս—1974 թ. օգոստոս:

**ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ**. Արդարացնել հայրենիքի բարձր պարգևը՝ Լենինի 2-րդ շքանշանը, արժանավայել դիմավորել ՍՍՀՄ կազմավորման և կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները Վ. Ի. Լենինի անվամբ կոչելու 50-ամյակները, դեպի համամիութենական 6-րդ հավաքը:

## ԵՐԹԻ ՀԻՄՆԸԿԱՆ ՓՈՒԼԵՐԸ

**28-30 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ**, 1972 թ. Միութենական հանրապետությունների բարեկամության տոնահանդեսներ՝ նվիրված ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին. **«ԱՅՍ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ԲՈԼՈՐ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՄԵԶ ԱՎԱՆԴԵԼ Է ՄԵԾ ԼԵՆԻՆԸ»** նշանաբանով:

**2-Ը ՀՈԿՏԵՄԲԵՐԻ**, 1973 թ. Համամիութենական ռադիո և հեռուստատեսային փոխկանչ երթի ընթացքի մասին:

**ՕԳՈՍՏՈՍ**, 1974 թ. Համամիութենական 6-րդ հավաք՝ նըվիրված կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները Վ. Ի. Լենինի անվամբ կոչելու 50-ամյա հոբելյաններին:

**ԵՐԹԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ** օղակներում ամփոփվում են քառորդի վերջում, իսկ ջոկատներում և դրուժինաներում՝ յուրաքանչյուր տարվա վերջում:

Երթի ակտիվ մասնակիցները կպարգևատրվեն «Միշտ պատրաստ» երթի մասնակցին» մակաթերթով, կընտրվեն 6-րդ հավաքի պատվիրակներ:

## ԵՐԹԻ ՊԸՑՄԸՆՆԵՐԸ

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ»**. Պիոները գիտի, լավ և գերազանց սովորելը իր գլխավոր առաջադրանքն է: Նա հետաքրքրասեր և հարցասեր է, սովորում է բարեխղճորեն և օգնում է ընկերներին, մասնակցում որևէ խմբակի: Նա գրքի, լրագրի, ամսագրի ակտիվ ընթերցող է, մեծահասակների հետ միասին մասնակցում է գիտելիքների տարածմանը:



Համամիութենական պիոներական 5-րդ հավաքի
հայ պատվիրակները։

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ԻՄ ՀԱՅՐԵՆԻՔԸ՝ ՍՍՀՄ»**. Հետևել երթուղուն, նշանակում է լինել մեր երկրի մարտական և աշխատանքային փառքի, ընդերքի հետախույզ, հայրենի բնության և հուշարձանների արթուն ժամապահ, ամրապնդել քաղաքի և գյուղի պիոներների բարեկամությունը: Կոմերիտականների հետ մասնակցել **ՍՍՀՄ** կազմավորման 50-ամյակին նվիրված սովետական երիտասարդության համամիութենական փառատոնին:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ՊԻՈՆԵՐԿԱՌՈՒՅՑ»**. Այս երթուղուն հետևողները պետք է իրենց ավանդը ներդնեն գյուղի, քաղաքի, դպրոցի շինարարական աշխատանքներում, ակտիվ մասնակցություն ցույց տան «Չուկոտկա» օպերացիային, ծանոթանան բանվորական և գյուղատնտեսական մասնագիտությունների հետ և կազմեն «Պիոներկառույցի քարտեզ», նշեն այնտեղ ջոկատի աշխատանքային գործերի տեղամասերը:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ՊԻՈՆԵՐԸ ՕՐԻՆԱԿ Է ԲՈԼՈՐ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ»**. Այս երթուղուն հետևողը ճշտությամբ կատարում է Սովետական Միության պիոներների օրենքները, դպրոցականների վարքի կանոնները, մասնակցում է պիոներական «Լապտերիկի» ռեյդերին, համամիութենական «Լուսացույց» խաղին և «Հայելի» ակումբի մասնաճյուղի պարապմունքներին, որոնք կազմակերպվում են ջոկատներում:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԴՐՈՇԸ»**: Այս երթուղու ընթացքում թող տող առ տող, էջ առ էջ հարստանա Համամիութենական պիոներական կազմակերպության պատմությունը և յուրաքանչյուր պիոներ լավ իմանա նրա պատմության մեջ տեղի ունեցած կարևոր իրադարձությունները:



*Համամիութենական «Փայլակ» ռազմա-մարզական խաղի գլխավոր դատավոր, Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանը՝ Արտեկում:*

*Լուսանկարները՝ Ս. ԵՐԻՑՅԱՆԻ*

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ԳԵՂԵՑԻԿԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ»**. Երթուղու մասնակիցը պետք է հետևողականորեն ծանոթանա արվեստին ու գրականությանը, ժողովրդական ստեղծագործություններին, խընամքով վերաբերվի **ՍՍՀՄ** ժողովուրդների կուլտուրայի և արվեստի գանձարաններին:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ԹԻՄՈՒՐԱԿԱՆ»**. Յուրաքանչյուր պիոներ թիմուրական է: Նա ամենուր է, ուր անհրաժեշտ է նրա օգնությունը: Պիոներ-թիմուրականը խնամք է տանում հաշմանդամների, պատերազմի և աշխատանքի վետերանների, փոքրիկների նկատմամբ: Նրա նշանաբանն է. «Երջանկություն մարդկանց»:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ՈՒԺԵՂՆԵՐ, ՀԱՄԱՐՁԱԿՆԵՐ, ՃԱՐՊԻԿՆԵՐ»**. Աշխատանքի և **ՍՍՀՄ** պաշտպանությունը յուրաքանչյուր պիոների սրբազան պարտքն է: Այս երթուղուն հետևողը պետք է ֆիզիկապես կոփի իրեն, ջոկատի հետ մասնակցի «Փայլակ» ռազմամարզական խաղերին, ՊԱՊ-ի նորմաներ հանձնելուն, «Պիոներական ուղեկից» օրացույցով սահմանված մրցույթներին և «Պատանի հրշեջների 01» ռեյդին:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆ»**. Դա նշանակում է տեղյակ լինել աշխարհում կատարվող իրադարձություններին, շատ լավ իմանալ կոմունիստական և բանվորական կուսակցությունների պայքարի, արտասահմանյան իր հասակակիցների կյանքի, տարբեր երկրների մանկական կազմակերպությունների մասին: Ակտիվորեն մասնակցել ինտերնացիոնալ աշխատանքներին և գրել «Թող լինի միշտ արևը» միջազգային գիրքը:

**ԵՐԹՈՒՂԻ՝ «ԱՍՏՂԻԿ»**. Այս երթուղին յուրաքանչյուր պիոներից պահանջում է հոգատարություն հոկտեմբերիկների և առհասարակ բոլոր փոքրիկների նկատմամբ, նախապատրաստվել նշելու պիոներական ջոկատներին կից հոկտեմբերիկական խմբերի 50-ամյակը:






# ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ՍՍՀ

Քարտեզի վրա Մոլդավիան իր գծագրությամբ հիշեցնում է խաղողի ողկույզի: Այդ նմանությունը կարծես թե խորհրդանշում է բերքառատ հանրապետությունը՝ իր շռայլ արևով ու արգավանդ հողերով: Տերիտորիայով Մոլդավիան, Հայաստանից հետո, ամենափոքր հանրապետությունն է Սովետական Միության մեջ, բայց 1 քառ. կմ վրա բնակչության խտությամբ՝ առաջին տեղն է գրավում:

Մոլդավիայի հպարտությունն ու հարստությունն են կազմում խաղողի ու մրգատու այգիները, որոնց շնորհիվ նրան անվանում են «այգի-հանրապետություն»: Դարերի ընթացքում աշխատասեր մոլդավացին հողը մաքրել է անտառներից, չորացրել ճահիճները և ստեղծել այժմ այդքան հռչակված այգիները: Գարնանը Մոլդավիան զուգվում է ծաղկուն ծառերով, իսկ աշնանը, բերքահավաքի ժամանակ, ամենուրեք լըսվում է կենսախինդ երգն ու երաժըշտությունը:

Այգիներին ու դաշտերին ջուր է տալիս Մոլդավիայի ամենամեծ գետ Դնեստրը, իսկ Դուբոսարի քաղաքի մոտ կառուցված խոշոր հիդրոկայանի շնորհիվ՝ այն նաև լույս է տալիս քաղաքներին ու գյուղերին:

## ՀՈՂՆ ԻՄ ՀԱՅՐԵՆԻ

*ՊԵՏՐՅԱ ԿՐՈՒՋԵՆՈՒԿ*

*Թանկ է ինձ համար հողն իմ հայրենի,*
*Որ ամեն գարնան ծաղկում է, ցնծում:*
*Վերից ցոլքերն են թափվում արևի,*
*Ցածում ջրերն են անուշ կարկաչում:*

*Ի՞նչ հմայիչ է հողն իմ հայրենի*
*Հմայիչ անգամ գիշերվա մթին.*
*Վերում շողում են բույլերն աստղերի,*
*Ցածում խաղողն է տալիս արծաթին:*

*Ի՞նչ հմայիչ է հողն իմ հայրենի,*
*Հմայիչ անգամ տոթին ու շոգին:*
*Ծփուն ծովերով ոսկե հասկերի*
*Ծիծեռնակներն են սուրում խնդագին:*

*Ծիծեռնակներն են անհոգ ճռվողում,*
*Եվ ալեծածան ծովում արտերի*
*Լեցուն հասկ ունի ամեն մի ցողուն,*
*Թանկ է ինձ համար հողն իմ հայրենի:*

## Ո Ր Դ Ի Ն

*ԲՈՐԻՍ ՎԼԱՍՏԱՐՈՒ*

Ա՞րկա մորաքույրը խրճիթ մտավ և գնաց դեպի խոհանոցային նեղլիկ պահարանը: Բացեց այն և զարմացած ու վշտահար ձեռքերն իրար զարկեց.

— Հացը նորի՞ց անհետացել է:

Արդեն երկու շաբաթ էր, ինչ աշխատանքից վերադառնալով, նա տեսնում էր, որ նախորդ օրը հոսպիտալից խնամքով հավաքած և տուն բերած հացի կտորներից ոչ մեկը չի մնացել: Ամեն օր համարյա մեկ կիլոգրամ հաց մի այնպիսի տղայի համար, ինչպիսին իր տասներեքամյա Ֆեդյան է, այն էլ հիմա, պատերազմի այս թեժ օրերին, երբ մարդիկ մի կտոր եգիպտացորենի հաց չեն ճարում: Երեկ նա հացի կտորներ հավաքեց ծանր վիրավոր գերմանացիների անկողինների մոտից: Մտածեց դրանցից պաքսիմատ պատրաստել ձմռան համար: Ո՞վ գիտի, ինքը դեռ ինչքան կկարողանա գիշերը վազել հոսպիտալ, իսկ ցերեկը՝ սպիտակեղեն լվանալ: Տանը գոնե մի փոքր պաշար պե՞տք է լինի: Եվ, ահա խնդրեմ, ո՛չ մի փշուր չի մնացել:

Նա բացեց դուռը և շեմքից զայրացած բղավեց.

— Ֆե-ե-դյա՜:

Մոլդավիայի գեղեցիկ վայրերից է անտառներով ծածկված կողրերը։ Կաղնու, բոխենու, հացենու, լորու պուրակներում ամռան շոգ օրերին միշտ հաճելի զով է լինում։ Այդտեղ աճում են բազմապիսի օգտակար խոտեր ու հատապտուղներ, ապրում են շատ կենդանիներ ու թռչուններ։

Մոլդավիայում զարգացած է նաև արդյունաբերությունը։ Մեր երկրի տարբեր վայրերում աշխատում են Մոլդավիայում ընտեղծված գյուղատնտեսական մեքենաները, օգտագործվում են էլեկտրատեխնիկական սարքավորումները։

Այն լուսավոր կյանքը, որի համար պայքարում էին մոլդավ ժողովրդի հերոս զավակները, քաղաքացիական պատերազմի նշանավոր զորավարներ Ս. Լազոն, Գ. Կոտովսկին, Մ. Ֆրունզեն, այժմ իրականություն է դարձել։

# «ԱՐԱԳԻԼՆԵՐ»

## *Մոլդավական խաղ*

*Սպիտակ արագիլները Մոլդավիայում ամենասիրված թռչուններն են. Դուք հավանորեն տեսել եք, թե ինչպես են նրանք կանգնում մի ոտքի վրա և ծառի վրա գտնվող իրենց բնից դիտում շրջապատը։*

*Երեխաները հնարել են մի զվարճալի խաղ. Նրանցից մեկը անբույն «արագիլ» է, իսկ խաղի 5—10 մասնակիցները գծում են մի մետր տրամագծով շրջանակ և մի ոտքի վրա կանգնում կենտրոնում։ Անբույն «արագիլը» ցատկում է շրջանակներից մեկի մեջ, և այդ երկու խաղացողները մի ոտքի վրա վազքով պետք է շրջանցեն բոլոր շրջանակներն ու ձգտեն զբաղեցնել դատարկ շրջանակը։ Վազքի ընթացքում մյուս խաղացողները կարող են կանգնել երկու ոտքի վրա։ Վազողներից նա, ով ավելի շուտ է հասնում դատարկ շրջանակին, մնում է այդտեղ, իսկ մյուսը պետք է սկսի խաղը։ Երեք անգամից ավելի ոչ մի «արագիլ» իրավունք չունի խաղը սկսելու։ Բացի այդ, անբույն «արագիլը» չի կարող երկրորդ անգամ ցատկել այն շրջանակի մեջ, որտեղ գտնվող խաղացողի հետ նա մի անգամ արդեն մրցել է։*



— Ի՞նչ, մայրի՛կ— արձագանքեց տղան բակի խորքից։

— Եկ այստե՛ղ։

Շեմքին երևաց Ֆեդյան։ Նրա պեպենոտ դեմքը ծածկված էր քրտինքով։

— Մարգերն էի ջրում։

Անհկա մորաքույրը նայեց նրան և, ձեռքերը խաչաձևելով կրծքին, հարցրեց.

— Որտե՞ղ է հացը։

Ֆեդյան զարմացած կկոցեց աչքերը.

— Ինչպե՞ս թե՝ որտեղ է։ Կերել եմ։

— Բոլո՞րը։ Ամբողջ կիլոգրա՞մը։ Մի օրո՞ւմ։

Տղան մի ոտքից հենվեց մյուսին և խոնարհեց աչքերը։ Նա որոշեց ամեն ինչ պատմել մորը։

Սկսեց հեռվից. մի անգամ ինքն անցնում էր հին կամուրջի մոտով, որը գտնվում է քաղաքի ծայրին, և հանկարծ նկատեց...

Բայց մայրը չթողեց նրան խոսել, թափահարեց ձեռքերը և այնպես նայեց նրան, կարծես առաջին անգամն էր տեսնում։

— Դու գնում ես հին կամրջի մո՞տ։ Դու այնտեղ ի՞նչ գործ ունես։ Քեզ հետ եմ... Աստված իմ, այս երեխան ինձ գերեզման կիջեցնի։ Դու ուզում ես, որ գերմանացիները սպանե՞ն քեզ։ Եթե մեկ էլ գնաս այդ կողմերում թափառելու՝ աչքիս չերևաս։ Լսո՞ւմ ես։

Ֆեդյան այլևս չուզեց ոչինչ ասել, և միայն զգալով փոթորկի մոտիկությունը, մեղավոր փնթփնթաց.

— Ես Պուֆիկին էլ եմ կերակրել:

Մայրը զունատվեց:

— Պուֆիկի՞ն: Շանը հացով կերակրել այն ժամանակ, երբ մարդիկ ուտելու ոչինչ չունե՞ն:

Մոր ձայնը դարձավ բարակ, խզված, կարծես, ուր որ է՝ կտրվելու էր: Նա երկար խոսեց. հայրդ ռազմաճակատում է, ամեն րոպե կարող է զոհվել, ես մի կտոր հացի համար գիշեր-ցերեկ տանջվում եմ, ցերեկը սպիտակեղեն եմ լվանում հոսպիտալում, գիշերը հատակ... Իսկ դու Պուֆիկին հացո՞վ ես կերակրում:

Հետո շարունակեց, ծանր շնչելով.

— Ոչինչ, ես քեզ սրանից հետո ցույց կտամ,— և զամբյուղից հանելով հացի սև կտորը, չարությամբ շպրտեց սեղանին.— Վերցրու: Այլևս ոչ մի ավել փշրանք չես ստանա:

Այնուհետև շտապ-շտապ հավաքեց հացի կտորները և մտավ հարևան սենյակը:

Ֆեդյան լսեց, թե ինչպես մայրը հացը փակեց այն սնդուկի մեջ, որտեղ պահում էր տոնական հագուստը և հառաչեց:

Մի կասկած սողոսկեց Անիկա մորաքրոջ սիրտը: «Կարո՞ղ է պատահել, որ Ֆեդյան թաքցնում է հացը և, երբ ես գնում եմ հոսպիտալ, տանում է վաճառելո՞ւ... Այո՛, այո՛: Ախր նա պատմում էր կամրջի մասին, որի մոտ միշտ հաց են վաճառում, ու ես չթողեցի վերջացնի... Երեկ չէ, առաջին օրը նրա մոտ ծխախոտի մնացորդ կար: Որտեղի՞ց նրան փող ծխախոտի համար...»

Նա դանդաղեցրեց քայլերը:

«Աստված իմ, ախր տղան ամբողջ օրը մենակ է, խելքին ինչ փչի կանի»:

Նա մտքերի հետ մտավ նրբանցք. «Ոչի՛նչ, ես նրան կբռնեմ»:

Իջնում էր հերթական պատերազմական գիշերը:

Մոտենալով տանը, Անիկա մորաքույրը հանկարծ կանգ առավ. նա նկատեց Ֆեդյային: Տղան դուրս եկավ բակից կռացած, գողունի շուրջը նայելով: Այնուհետև սկսեց վազել՝ ծոցում ինչ-որ բան պահած: Անիկա մորաքույրը պահեց շնչառությունը. ուրե՞մն...

Նա սպասեց, մինչև որդու քայլերի ձայնը հեռացավ, հետո մտքում ասաց. «Ոչի՞նչ, ես քեզ դաս կտամ, անպիտան»: Որոշեց բռնել նրան այնտեղ՝ հացը վաճառելիս:

Ֆեդյան արագ էր գնում, Անիկա մորաքույրն աշխատում էր ետ չմնալ:

Ֆեդյան հավասարվեց քաղաքային այգու մոտ հավաքվածներին: Մայրը սեղմեց շրթունքները: Անպիտա՞ն... Բայց տղան մի ակնթարթում անհետացավ նրա տեսադաշտից: Անիկա մորաքույրն աչք ածեց ամբողջ փողոցը, վերջապես նկատեց տղային՝ նա արդեն թեքվում էր անկյունից: Ցավով և վախը սրտում նա գնաց որդու հետևից: Ո՞ւր է շտապում նա:

Ֆեդյան գնում էր դեպի կամուրջը...

Անիկա մորաքրոջ՝ լվացքից կոշտացած մատները սեղմվեցին, դարձան երկու ամուր, ծանր բռունցք: Շնչասպառ, նա ատամների արանքից շշնջաց.

— Կխեղդե՞մ: Իմ ձեռքերո՞վ կխեղդեմ:

Նա արդեն պատրաստվում էր կանչել տղային, երբ նեղլիկ խրճիթից դուրս եկավ մի պատանի: Նա զգույշ մոտեցավ դարբասին.

— Ֆե՛դյա, դո՞ւ ես:

— Ես եմ:

Տղան իր որդու հասակակիցն էր՝ մազերը կեղտոտ, գզգզված, հնամաշ զգեստով: Նրա վերին շըրթունքի անկյունում չորացել էր արյունը: Անիկա մորաքույրը ձեռքով ծածկեց բերանը, որպեսզի չճչա. պատանին Ֆիմա Պաստերնակն էր՝ իրենց հարևան ուսուցչուհու որդին: Ֆիմա՞ն: Այնպիսի խելոք տղա, միշտ մաքուր հագնված, լավ սանրված... Եվ, ահա՜:

Որդու ձայնը սթափեցրեց նրան:

— Շրթունքդ ի՞նչ է եղել:

— Այսօր եֆրեյտորը հարվածեց: Նա ստիպում էր քար լցնել սայլի մեջ, ես ընկա, և նա խփեց...

Ֆեդյան վերնաշապիկի տակից հանեց թղթի մեջ փաթաթված հացը և մեկնեց ուսուցչուհու որդուն:

— Շնորհակալություն,— հուզված ասաց տղան: Նորից տիրեց լռություն: Հետո Ֆեդյան հարցրեց.

— Ինչպե՞ս է մայրիկդ, դեռ հիվա՞նդ է:

— Այսօր լավ է... Սենյակում քայլում էր:

— Քիչ մնաց մոռանա՜յի,—բացականչեց Ֆեդյան և ձեռքը շտապ տարավ գրպանն ու հանեց մի փոքրիկ փաթեթ:

— Վերցրո՛ւ: Այստեղ մի քանի կտոր շաքար կա: Թող մայրիկդ թեյ խմի: Գուցե այդ նրան օգնի...

Անիկան հուզմունքից կարկամել էր: Դրանք այն երեք կտորներն էին, որ նա վերցրել էր գերմանական սպայից:

— Այսօր մայրիկս նկատեց, որ հացն անհետանում է,— ասաց Ֆեդյան,— ես ասացի կերակրել եմ շանը: Նա բարկացավ, պահեց հացը: Այսօր երեկվանից մնացածն եմ բերել... Բայց ոչինչ, Ֆիմա, մի երկու օր նա հացը փակի տակ կպահի, հետո կմոռանա, ես նրան գիտեմ...

Անիկա մորաքույրը պոկվեց ցանկապատից և մըթան մեջ բողարկված՝ քայլեց դեպի տուն:

Երբ Ֆեդյան տուն եկավ, ուրախ զարմանքով նըկատեց, որ փակված հացը դրված է պահարանի դարակում, այն միակ կտորի կողքին, որը մայրի՛կը թողել էր իրեն՝ ամբողջ օրվա համար:

*Թարգմ. ՎԵՆԵՐԱ ԱՆԴՐԵԱՍՅԱՆԻ*

# Գ Ի Ր Ք Ը

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Ես դժբախտ էի, թեև կիրակի էր, իսկ բակում՝ տաք ու խելքահան անող եղանակ: Դրա համար էլ նստել էի տանը ու հերթով հառաչում էի: Մեկ անգամ հառաչում էի դժբախտ լինելուս համար, հետո՝ որ դժբախտ եմ կիրակի օրով, իսկ վերջում էլ՝ որ ոչ ոք ինձ չի հասկանում: Հենց թեկուզ՝ ծնողներս: Քանի որ սրտիս վրա ծանրություն կար, ես շուտ արթնացա ու այլևս չկարողացա քնել: Երբ հագնվեցի ու գնում էի լվացվելու, մայրիկը ետևիցս ասաց.

— Տես, է՛, ի՛նքն է վեր կացել, ուրիշ անգամ զոռով եմ քնից հանում:

— Որովհետև պիտի բակ գնա,— ասաց հայրիկը,— ո՞նց կարելի է ուշանալ:

Ու ես որոշեցի տառապել: Բոլորն էլ գիտեն, որ կիրակին ուշ-ուշ է գալիս և մյուս օրերից կարճ է: Որոշեցի կորցնել այդ օրը: Բակ չեմ իջնի, հեռուստացույց չեմ նայի, ոչ էլ կկարդամ երեկ գտածս գիրքը: Այդ գիրքն էր իմ դժբախտության պատճառը: Երկու տարի առաջ ես հայրիկից փող խնդրեցի ու շրջեցի բոլոր գրախանութները, բայց գիրքն արդեն սպառվել էր: Իսկ երեկ, երբ դասարան մտա ու բացեցի դարակըս, գիրքը դրված էր այնտեղ: Ես շապիկի վրա կարդացի՝ «ՋՈՆ ՀԱՆՏԵՐ— ՈՐՍՈՐԴԸ», շունչս կտրվեց և գիրքն անմիջապես թաքցրի պայուսակիս մեջ: Եվ ահա, փոխանակ երջանիկ լինելու, ես դժբախտ էի: Որպեսզի տառապանքս լրիվ լինի, ես որոշեցի երեկ սովորած դասերս այսօր մեկ անգամ էլ սովորել:

Պատմության դասագիրքը դրած առաջս, ես արդեն տառապում էի, երբ մայրիկը հագնվեց, որպեսզի խանութ գնա: Հայրիկն ասաց.

— Դու ինչո՞ւ ես գնում, թող Ռուբիկը գնա:

Մայրիկը նայեց դռնից ու ասաց.

— Երեխան կարդում է, մի՛ խանգարի:

Հայրիկն ասաց, առանց դռնից նայելու.

— Կարդում է, որ չգնա: Համոզված եղիր: Մարդ էլ ծուլությունից հառաչի՞: Տեսնես ո՞ւմ է քաշել:

Ես համոզվեցի, որ դժբախտ եմ: Ամենադժբախտ տղան եմ, որ երբևիցե իր երազած գիրքն է գտել: Նաև ամենադժբախտ պիոներն եմ, որ երբևիցե շաբաթ օրը պատմվածքի քննարկում է անցկացրել ջոկատում: Իմ բախտից պատմվածքը Սերյոժա Պերեշկինի մասին էր, որը կորցրել էր խիղճը, որովհետև դասի ժամանակ արտագրել էր կողքին նստողից: Այդ պատմըվածքը տպագրված էր «Պիոներ» ամսագրում: Սերյոժան ստիպված էր փնտրել իր խիղճը, որովհետև



առանց խղճի մարդ չի կարող ապրել: Եվ նա իր խիղճը գտնում է, այսինքն՝ իր ուժերով է լուծում խնդիրը: Ուրեմն, ես զեկուցում էի և ասացի, որ արտագրելը անազնվություն է, իսկ պիոները իրավունք չունի անազնիվ լինել, որովհետև կարմիր փողկապ է կրում: Ես ավելացրի, որ անազնվություն է, երբ պիոները սուտ է խոսում, երբ ծեծում է իրենից փոքրերին, երբ փչացնում է նստարանը, գրոտում է պատերին: Վատ սովորելը նույնպես անազնվություն է, ասացի ես վերջում: Ինձնից հետո վեր կացավ Վաչիկը և հայտարարեց, որ մի բան ես մոռացա :Եվ ասաց, որ երեք տարի առաջ ինքը պիոներին անվայել արարք է կատարել: Այսինքն՝ այն ժամանակ ինքը դեռ պիոներ չէր, բայց պիոներ դառնալուց հետո հասկացել է իր սխալը: Բոլորն աչքերը չռած սպասում էին, որ Վաչիկը մի սարսափելի խոստովանություն կանի, բայց երբ նա ասաց, որ փողոցում երեք ռուբլի է գտել, հիասթափված շունչ քաշեցին: Ինչ-որ մեկը նույնիսկ հարցրեց, թե ի՞նչ է արել Վաչիկը այդ երեք ռուբլին: Վաչիկը պատասխանեց, որ պաղպաղակ է կերել: Չեմ հիշում, թե ով չհավատաց, որ կարելի է երեք ռուբլու պաղպաղակ ուտել: Վաչիկն ասաց, որ միանգամից չի կերել, այլ մի շաբաթում, իսկ մի պաղպաղակ էլ գնել է

քույրիկի համար: Ընկեր Վարդանը՝ մեր ջոկատավարը, զգուշացրեց մեզ, որ շեղվում ենք հարցից, իսկ ես վեր թռա ու հայտարարեցի, որ Վաչիկի արածի մեջ վատ բան չկա. հո չի՞ կարելի փողը թողնել փողոցում ընկած. եթե Վաչիկը չվերցներ, կվերցներ մեկ ուրիշը: Ես ասացի, որ դրամ կամ որևէ իր, ասենք՝ գիրք գտնելը, չի կարելի համարել պիոներին անվայել արարք: Բայց Վաչիկը սկսեց բացատրել, որ դրամի տերը հետո երևի ետ է եկել ու շատ է փնտրել իր երեք ռուբլին, որը գուցե նրան շատ պետք էր ու չի գտել: Երբ բոլորը համաձայնեցին Վաչիկի հետ, տրամադրությունս շատ ընկավ: Հավաքույթի մնացած մասը ես համարյա չէի լսում: Սթափվեցի միայն վերջում, երբ ընկեր Վարդանը ինձ շնորհակալություն հայտնեց հետաքրքիր թեմա ընտրելու և լավ զեկուցելու համար:

Այդքանից հետո ես տուն եկա ծանր սրտով, որովհետև պայուսակիս մեջ իմ երազած գիրքն էր: Եթե Վաչիկն իսկապես հանցանք էր գործել, ապա իմ հանցանքն ավելի մեծ էր: Նախ, դրամ գտնելիս Վաչիկը դեռ պիոներ չէր և հետո, դրամը ընկած էր եղել փողոցում, որտեղ նրա տիրոջը գտնելը շատ դժվար էր: Իսկ ես պիոներ էի և գիրքը վերցրել էի դարակից, որի տերը, պարզ է, պետք է լիներ այն տասներորդ դասարանցին, որը իմ նստարանին է նստում:

Մայրիկը վաղուց վերադարձել էր խանութից և մենք նախաճաշել էինք: Հիմա մայրիկը խոհանոցում ճաշ էր պատրաստում, հայրիկը պատշգամբում նարդի էր խաղում հարևանի հետ, իսկ ես նայում էի դասագրքին, լսում էի բակից եկող ձայները ու հառաչում:

Հետո հարևանը գնաց, մենք ճաշեցինք, և ես վերադարձա դասագրքի մոտ: Ճաշից հետո մայրիկը հավաքեց սեղանը, լվաց ամանեղենը, իսկ հայրիկը թերթ էր կարդում: Ավելի հետո մայրիկը լվացք էր անում, իսկ հայրիկը պառկեց բազմոցին ննջելու: Իսկ ես հառաչում էի: Արևն արդեն իջել էր դիմացի շենքին, կլոր էր ու կարմիր, բակից եկող ձայները սիրտ մաշող էին դարձել: Ես այլևս չդիմացա ու հարցրի մայրիկին, թե նա երբևէ որևէ բան գտե՞լ է, ասենք՝ դրամ կամ գիրք:

— Չէ՛,— ասաց մայրիկը,— երբ փոքր աղջիկ էի, կոճակ գտա:

— Իսկ հայրի՞կը,— հարցրի ես:

— Հայրիկն ինքը տուն է հասնում, այդ էլ մեզ հերիք է,— ասաց մայրիկը:

Հայրիկը սենյակից գոռաց, որ մենք իր մասին բարովին չենք մտածում, բարձր ենք խոսում, չենք թողնում մի քիչ հանգստանա, և մենք լռեցինք:

Վերջապես մայրիկն ինձ խղճաց: Արևն արդեն չէր երևում, իսկ հայրիկը վեր էր կացել ու հեռուստացույցն էր միացնում:

— Այսօր շատ պարապեցիր, բալի՛կ ջան,— ասաց մայրիկը,— մի՛ քիչ էլ ուրիշ բանով զբաղվիր: Գնա բա՛կ:

— Չեմ ուզում,— ասացի ես:

— Դու էլ հավատում ես, թե նա դաս է սովորում,— ասաց հայրիկը:— Առավոտվանից նույն էջին է նայում:

Հետո մայրիկը հատակն էր փայլեցնում, հայրիկը հեռուստացույց էր դիտում, իսկ ես մեջքով դեպի հեռուստացույցը նստած օրորվում էի աթոռին: Հոգնածությունից: Հառաչելու էլ ուժ չէր մնացել: Հիմա ես լուռումունջ էի տառապում, բայց սիրտս արդեն կասկած էր ընկել: Չէի կարողանում հիշել գոնե որևէ մեկին, որ տանջված լիներ գիրք թռցնելու կամ կիրակին կորցնելու պատճառով, ոչ էլ հիշում էի, որ նման արարքը հերոսություն համարվեր: Միայն գիտեի, որ ամբողջ օրը ոչինչ չեմ արել, բայց չգիտես ինչու հոգնել եմ: Ընթրիքի ժամանակ ես արդեն քնում էի, և երբ հայրիկը նորից հեռուստացույց էր դիտում, իսկ մայրիկը նորից ամանեղեն էր լվանում, ես գնացի ու պառկեցի:

Իմ տառապանքը շարունակվեց նաև երկուշաբթի օրը, հետո մինչև շաբաթվա վերջը: Միայն թե ես արդեն ուրիշ ձևով էի տառապում: Սպասում էի: Երկուշաբթի ես գիրքը դպրոց տարա ու դրեցի դարակում: Բայց երբ երեքշաբթի եկա դպրոց, գիրքը իր տեղում էր: Այդ տասներորդ դասարանցին չգիտես ինչու հրաժարվել էր իր գրքից: Նույնը կրկնվեց նաև հաջորդ օրը: Ես եզրակացրեցի, որ նա ամեն ինչ հասկացել է և որոշել է պատժել ինձ: Գուցե նույնիսկ թաքուն հետևում է և ծիծաղում իմ տառապանքի վրա: Սպասելով ու տանջվելով ես համբերեցի մինչև ուրբաթ օրը: Բայց երբ ուրբաթ առավոտյան գիրքը նորից իր տեղում գտա, համբերությունս սպառվեց: Ինչ լինում է, թող լինի: Ես վերցրի գիրքն ու գնացի ընկեր Վարդանի մոտ: Ամեն ինչ պատմեցի նրան: Չմոռացա նաև ասել, որ այդ տասներորդ դասարանցին պակաս անազնիվ չի, եթե կարողանում է իրենից փոքրին այդպես տանջել: Իսկ ինձ համար խնդրեցի ամենածանր պատիժը:

Երեկոյան ես զարմանալիորեն հանգիստ էի: Չնայած վաղը իմ վզից հանելու էին պիոներական փողկապը, իսկ դրանից հետո ես ապրելու մտադրություն չունեի: Նախ և առաջ ես պատրաստեցի բոլոր դասերս, իսկ հետո սկսեցի մտածել, թե ո՛ւր եմ գնալու: Գիտեի, որ գնալու եմ շատ հեռու, բայց թե ո՛ր ուղղությամբ, դեռ չգիտեի: Որոշեցի ոչ մեկին հրաժեշտի նամակ չգրել, որովհետև ծնողներիս, բոլոր դասընկերներիս, ուսուցիչներիս, հարևաններին ու ազգականներին նամակ գրելու համար կպահանջվեր երևի մի ամիս, իսկ ես չէի կարող այդքան սպասել: Դրա համար էլ որոշեցի մնացած ժամանակը իզուր չվատնել և որևէ բարի գործ կատարել: Մայրիկը կանգնել էր աթոռին և լվացքի պարանը կապելու համար փորձում էր

պատշգամբի պատին մեխ խփել: Ես անմիջապես վազեցի նրա մոտ, ձեռքից վերցրի մուրճը: Բայց մայրիկը ուզում էր, որ մեխը բարձր խփվի, իսկ իմ ձեռքը չէր հասնում: Այդ ժամանակ հայրիկը հառաչեց (ճիշտ ինձ նման), թերթը ցած դրեց ու եկավ մեզ օգնելու: Հայրիկը մեխը խփեց, իսկ ես բռնել էի աթոռը, որպեսզի նա հանկարծ չընկնի:

Ընթրիքից հետո ես դարձյալ բարի գործ կատարեցի: Մայրիկը չէր կարողանում փչացած արդուկը նորոգել: Բայց հենց որ արդուկը ձեռքս առա, հայրիկը նորից եկավ օգնելու: Նա ասաց, որ ինչպես երևում է, այսօր իրեն վիճակված չէ ո՛չ թերթ կարդալ, ո՛չ հեռուստացույց դիտել, այնպես որ կնորոգի մեր արդուկը: Հայրիկը արդուկն էր նորոգում, իսկ ես օգնում էի, տալով անհրաժեշտ պտուտակները: Իսկ մայրիկը նայում էր մեզ ու ժպտում:

Երբ պառկեցի, դեռևս չէի որոշել, թե որ ուղղությամբ եմ հեռանալու, բայց հույս ունեի, որ մինչև վաղը կորոշեմ: Գիտեի միայն, որ դա մի այնպիսի տեղ է լինելու, որտեղ, իհարկե, գայլեր կլինեն, գուցե նաև արջեր: Ես մի քիչ տխրեցի: Իսկ երբ պատկերացրի, թե ինչպես են դասընկերներս ու ուսուցիչներս գալիս մեր տուն ցավակցելու մայրիկին ու հայրիկին, լացս եկավ: Ընկեր Սահակյանը երևի կզղջա, որ թվաբանությունից քառորդս չորս նշանակեց: «Ռուբիկը արժանի էր գերազանցիկ լինելու»,— երևի կասի նա: Իսկ ընկեր Վարդանը բարձրաձայն կասի. «Ռուբիկը իսկական պիոներ էր, դրա համար չկարողացավ տանել այս ծանր հարվածը»: Հայրիկը կհիշի, թե ես ինչպես էի բռնել սանդուղքը, որպեսզի ինքը չընկնի: Իսկ մայրիկը... Ես այլևս չկարողացա որևէ բան մտածել և բարեբախտաբար շուտով քնեցի:

Առավոտյան խնամքով արդուկեցի փողկապս, որ վերջին անգամ էի կապում, և գնացի դպրոց: Հիմա էլ երևի ընկեր Վարդանն էր որոշել տանջել ինձ: Նա երեվաց միայն դասերի վերջում և ասաց, որ մի քանի րոպե բոլորս մնանք մեր տեղերում: Ես որոշեցի նույնիսկ թույլ չտալ հանելու փողկապս: Կհանեմ իմ ձեռքով ու կհանձնեմ:

Ընկեր Վարդանի ասածներից ես ոչինչ չէի հասկանում: Միայն այն ժամանակ, երբ Վաչիկը խփեց թևիս ու շշնջաց՝ «Ի՞նչ ես քնել», ես սթափվեցի ու ինձ թվաց, որ ընկեր Վարդանն ասում է.

— Դե՛, Ռուբի՛կ, մոտեցիր ու ստացի՛ր գիրքդ: Շնորհավորում եմ:

Գիտե՞ք ինչ պարզվեց: Պարզվեց, որ իմ նստարանին ոչ մի տասներորդ դասարանցի էլ չի նստում: Ախր իմ նստարանն ամենավերջինն է շարքում: Եվ գիրքը թողել է պրակտիկանտներից մեկը, որ տասներորդ դասարանում դաս լսելիս է եղել: Դա կատարվել է պրակտիկայի վերջին օրը: Ընկեր Վարդանը զանգահարել էր ինստիտուտ, կարողացել էր գտնել այդ ուսանողին, և ուսանողն ասել էր, որ գիրքը ինձ է նվիրում: Հետո խոստացել էր, որ հենց կարողացավ, կգա դըպրոց ու կմակագրի գրքի վրա:

Չորս կողմից ինձ շնորհավորում էին ու խնդրում, որ իրենց նույնպես տամ կարդալու: Սկզբում տղաները, հետո աղջիկներն էլ միացան նրանց: Եվ այդ ժամանակ իմ մտքով գիտեք ի՞նչ անցավ: Ես խնդրեցի ընկեր Վարդանին, որ նա խնդրի այդ ուսանողին, որպեսզի նա գիրքը ոչ թե ինձ նվիրի, այլ մեր դասարանին: Հենց այդպես էլ մակագրի՝ «5-րդ «Ա» դասարանի պիոներներին»: Ընկեր Վարդանը խոստացավ: Իսկ մենք տեղնուտեղը որոշեցինք, որ դա կլինի մեր դասարանական գրադարանի առաջին գիրքը: Հետո, երբ կմեծանանք ու կավարտենք դպրոցը, մեր գրադարանն արդեն մեծ կլինի ու այն կնվիրենք դպրոցին, որպեսզի մեզնից հետո եկողները նույնպես կարողանան կարդալ:

Մի շաբաթ տառապելու հետևանքով ես նիհարել էի, աչքերս խորն էին ընկել, իսկ անվերջ հառաչելու հետևանքով ձայնս խզվել էր: Բայց ես տուն էի վերադառնում երջանիկ: Որովհետև կարմիր փողկապս միշտ իմն էր լինելու: Որովհետև ես վաղը իրավունք ունեի կարդալու իմ գտած գիրքը՝ մեր դասարանական գրադարանի առաջին գիրքը:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ



# ԵՐԿԱԹՈՒՂԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Ա. ՍԱՀՐԱԴՅԱՆ*
*Պահեստի ինժեներ-գնդապետ, Հայրենական մեծ պատերազմի վետերան*

19-րդ դարի սկզբներին անգլիական մի ամսագիր գրել է. «Չկա ոչինչ այնքան ծիծաղելի ու անմիտ, քան շոգեքարշ ստեղծելու խոստումը, որն, իբր, կարող է շարժվել փոստակառքից կրկնակի անգամ արագ։ Նույնքան անհավատալի է նաև, որ անգլիացիները իրենց կյանքը կարող են վստահել այդպիսի մեքենայի, որը նույնն է, եթե կամավոր համաձայնվեն պայթել հրթիռի հետ միասին»։ Այդ անվստահությունից վիրավորված Ջ. Ստեֆենսոնը կառուցեց մի շոգեքարշ և անվանեց «Հրթիռ»։ Այն կարող էր շարժվել մինչև 46 կմ/ժամ արագությամբ։

Այժմ մարդատար գնացքները շարժվում են 100—140 կմ/ժամ արագությամբ։ Սովետական Միությունում փորձարկման է ենթարկվում տուրբոռեակտիվ գնացք, որը մինչև 250 կմ/ժամ արագություն կարող է զարգացնել։ Մոտ ապագայում, 10—15 տարի հետո, կստեղծվեն ճեպընթաց գնացքներ, որոնք կարող են շարժվել 400 և նույնիսկ 800 կմ/ժամ արագությամբ։



## ԵՐԿԱԹՈՒՂՈՒ ՄՈՒՏՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ

Անդրկովկասում ցարական կառավարությունը 70 հազար զորք էր պահում։ Ճանապարհներ չկային, որ զորամասերի համար ժամանակին հագուստ, ռազմամթերք, զենք բերեին, միակ ճանապարհը (խճուղին) անցնում էր Դարյալի կիրճով՝ Կովկասյան լեռնաշղթայի վրայով, գնում մինչև Օրջոնիկիձե և այնտեղից էլ՝ Ռուսաստան։ Անդրկովկասում կար շատ հարստություն՝ նավթ, մարգանեց, պղինձ, ոսկի, բամբակ, ածուխ և այլն, որոնք հարկավոր էին Ռուսաստանի ֆաբրիկաների և գործարանների համար, իսկ առանց երկաթուղու, այդ բոլորը սայլերով ու ֆուրգոններով Կովկասյան լեռնաշղթայի վրայով տանել անհնարին էր, հատկապես ձմռան օրերին։

Այս բոլորը ստիպեցին ցարական կառավարությանը մտածել երկաթուղի կառուցելու մասին. 1856 թվականին ինժեներ Ստատկովսկին մի նամակ գրեց Կովկասի ռուսական զորքերի հրամանատարին և ներկայացրեց մի նախագիծ Բաքու-Թիֆլիս երկաթուղի կառուցելու համար, բայց այդ նախագիծը չընդունվեց։ Մինչև 1864 թվականը շատ ինժեներներ նախագծեր կազմեցին և ներկայացրին կառավարությանը։ Դրանցից ամենալավը ինժեներ Ռիչարդ Բելի կազմածըն էր, որը առաջարկում էր Բաթում-Բաքու-Ղարս և Ջուլֆա երկաթուղագծեր կառուցել։

Ցարական կառավարությունը ինժեներ Բելի նախագիծը հաստատեց, բայց դրամ չուներ շինարարությունը սկսելու համար։ Անգլիացիներից ու ֆրանսիացիներից վարկ խնդրեց, մերժեցին, մտածելով, որ հետամնաց ու հեռավոր երկիր է, ժողովուրդը՝ կիսավայրենի, իրենց դրամագլուխը կարող է գնալ կորչել։

Ռուսական Կովկասի զորամասերի գլխավոր հրամանատար Բարյաթինսկին հրամայեց 70 հազար զորքից 30 հազարն ուղարկել երկաթուղի կառուցելու։

1865 թվականին Փոթի նավահանգստից սկսեցին երկաթուղու կառուցումը։ Աշխատանքը գնում էր շատ արագ։ Արտասահմանից շոգեքարշեր ու վագոններ բերին այդ շինարարության վրա աշխատեցնելու համար։

Թուրքական սուլթանը թշնամաբար էր տրամադրված Ռուսաստանի նկատմամբ, չէր ցանկանում, որ այդ երկաթուղին կառուցվի, դրա համար էլ մի խումբ թուրքերի վարակել տվեց խոլերայով և ուղարկեց երկաթուղու շինարարության շրջանը։ Խոլերան այստեղ մեծ չափերով տարածվեց, և շատերը մահացան, բայց համաճարակն ի վերջո կանխվեց, շինարարությունը կարելի եղավ ավարտել։

1872 թվականի հոկտեմբերի 10-ին առաջին գնացքը Փոթի կայարանից անցնելով 290 կիլոմետր, հասավ Թիֆլիս։ Այդ գնացքին թիֆլիսցիք դիմավորեցին ծաղիկներով, երաժշտությամբ, մեծ հանդիսավորությամբ։ Այս տարի հոկտեմբերի 10-ին լրացավ Անդրկովկաս մուտք գործած գնացքի 100 տարին։

1872 թվականին արտասահմանը ոսկի փողով նավթ էր խնդրում, իսկ Բաքվի ավազուտներում շատրվանում էր նավթը և հոսում աննպատակ, տեղափոխում էին դրա մի չնչին մասը, այն էլ տկերով ու տակառներով, սայլերի վրա, որոնք ամիսներով ճանապարհորդում էին, մինչև որ հասնեին Փոթի նավահանգիստը:

Դրա համար էլ անմիջապես սկսվեց Թիֆլիս—Բաքու երկաթուղագծի կառուցումը: 1883 թվականի մայիսի 3-ին առաջին գնացքը անցնելով 515 կիլոմետր, հանդիսավորությամբ մտավ Բաքու քաղաքը:

Այսպիսով 1865—1883 թթ. Սև և Կասպից ծովերը երկաթուղով կապվում են միմյանց հետ: 1896 թվականին սկսվում է Թիֆլիս—Լենինական (Ալեքսանդրապոլ) երկաթուղագծի կառուցումը, որը անցնում է Լոռվա ձորով, Ջաջուռի թունելով: 1899 թվականի փետրվարի 7-ին ժամը 12-ին առաջին գնացքը անցնելով 216 կիլոմետր, մտնում է պատմական Հայաստանի Շիրակի դաշտը, որին դիմավորում են Լենինականի կայազորի զորքերը և քաղաքացիները իրենց դհոլ-զուռնայով:

Ռուսական զորամասերի մի մեծ խումբ գտնվում էր Ղարս բերդաքաղաքում, դրա համար էլ հրամանատարությունը պահանջեց երկաթուղագիծը հասցնել մինչև Ղարս:

1899 թվականի հուլիսի 21-ին առաջին գնացքը հասավ Ղարս բերդաքաղաքը: Ավարտվում է նաև Լենինական—Երևան—Ջուլֆա երկաթուղագծի կառուցումը, 1902 թվականի դեկտեմբերի 6-ին առաջին գնացքը մտնում է Երևան, իսկ 1908 թվականի հունվարի մեկին գնացքը զարդարված դրոշակներով հասնում է Ջուլֆա կայարանը, որը սահմանակից է Պարսկաստանին:

Ինչպես Փոթի—Թիֆլիս, Թիֆլիս—Բաքու, այնպես էլ Թիֆլիս—Լենինական—Ղարս ու Լենինական—Երևան—Ջուլֆա երկաթուղաշինարարության վրա աշխատել են ավելի քան 25 ազգությունների զավակներ, այսպիսով, կառույցը ինտերնացիոնալ բնույթ էր կրում:

Թիֆլիս—Ղարս և Երևան—Ջուլֆա երկաթուղագծի կառուցման ժամանակ էլ, թուրքական կառավարությունը ուղարկում էր իր զինված ավազակներին, որոնք գալիս սպանում էին շինարարներին և հատկապես ինժեներներին ու տեխնիկներին, քանդում էին կառուցված գիծը, փայտակոճերը (շպալները) այրում և նորից փախչում Թուրքիա, որովհետև սահմանը մոտիկ էր: Բայց այս ավազակությունը երկար չտևեց, ռուս կոզակները պաշտպանում էին շինարարներին և սահմանը անցնողներին թրատում էին սահմանագլխին: 1865—1900 թթ. կառուցվեց նաև Հյուսիսային Կովկասի երկաթուղին մինչև Դերբենտ, իսկ 1900 թվականի հուլիսին հասավ մինչև Բալաջարի կայարանը, այսինքն Անդրկովկասը, այդ թվում նաև Արևելյան Հայաստանը, երկաթուղով ընդմիշտ միացավ եղբայրական Ռուսաստանին:



## ԵՐԿԱԹՈՒՂԱՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

1921 թվականի ապրիլին Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի երկաթուղիները նորից միացվեցին, որոնք բաժանվել էին 1918—1921 թթ. պատերազմի ընթացքում:

Ամենաթալանվածը ու խարխլվածը Հայաստանի երկաթուղին էր, դրա համար էլ սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո սկսվեց վերականգնման աշխատանքը, որից հետո սկսվեցին նոր երկաթուղիների կառուցումը:

1925—1929 թթ. կառուցվեց Լենինական—Արթիկ—Պեմզաշեն երկաթուղային փակուղին, որով ապահովվեց Արթիկի տուֆ-շինաքարի և Պեմզաշենի պեմզայի տեղափոխումը քաղաքների վերակառուցման ու կառուցման համար: Առաջին գնացքը Լենինականից Արթիկ կայարանը հասավ 1929 թվականի նոյեմբերի 29-ին: Շոգեքարշի ճակատային մասում ծածանվում էր ՍՍՀՄ և ՀՍՍՀ կարմիր դրոշները: Այս գծի երկարությունը 26 կիլոմետր է, իսկ Արթիկից մինչև Պեմզաշեն՝ 6 կիլոմետր, ընդամենը՝ 32 կիլոմետր: 1926 թվականի հունիսի 5-ին կառուցվեց Անի—Անիպեմզա հինգ կիլոմետր երկաթուղային փակուղին, որով անիպեմզան տարվում է գործարաններին ու շինարարություններին:

1932 թվականի նոյեմբերի 7-ին առաջին գնացքը Մինջևանից գնաց Ղափան, անցնելով 40 կիլոմետր տարածություն, դա մեծ ուրախություն պատճառեց Զանգեզուրի բնակչությանը, դա նույնպես պատմական մի տարեթիվ էր, քանի որ մինչև այդ Ղափանի պղինձը մինչև Եվլախ կայարանը տեղափոխում էին ուղտերի քարավանով:

1932—1957 թթ. սկսվեց կառուցվել Երևան—Հրազդան երկաթուղին և 1957 թվականի դեկտեմբերի 31-ին առաջին գնացքը հասավ Հրազդան, իսկ Հրազ-

# Միգել Դե Սերվանտես

Ալժիրի արքան, որ Կոստանդնուպոլսի սուլթանի հավատարիմ ծառան էր, կամարակապ մարմարյա ճերմակ սյուներով պալատ ուներ: Պալատի շուրջը ստվերախիտ բակ կար, բակում՝ ջրավազան և շատրվաններ: Բակում հպարտորեն քայլում էին սիրամարգերը, ջրավազանում ոսկյա ձկնիկներ էին լողում: Իսկ որմնախորշերից մեկում, որը պաշտպանված էր արևից և անձրևից, դրված էր մի ներքնակ և մի՝ բարձ: Երկար, արծաթյա շղթայի մի ծայրը ամրացված էր պատին: Եվ Ալժիրի արքան, մոտենալով շղթայի մյուս ծայրին, պարծանքով ցույց էր տալիս հյուրերին.

— Տեսա՞ք իմ ամենաթանկարժեք գազանին: Դա իմ տնային ընձառյուծն է:

Հյուրերը նայում էին տարակուսած, ոչ մի ընձառյուծ չկար: Միայն նիհար, ցածրահասակ, սըրածայր մորուքով մի մարդ էր մտազբաղ ետ ու առաջ քայլում, որքան թույլ էր տալիս շղթան, որին նա գամված էր: Թերևս մի ժամանակ նա՝, ձեռները կրծքին ծալելու սովորություն է ունեցել: Իսկ այժմ ձախ ձեռքի փոխարեն մի գունդ էր, և նա առողջ ձեռքով պահում էր այդ գունդը կրծքի վրա:

Հյուրերը անհամարձակ իրար էին նայում. ո՞ւր է ընձառյուծը...

Եվ արքան, իր շեկ բեղ ու մորուքի միջից քմծիծաղ տալով, ներողամտորեն բացատրում էր, որ հենց այս ողորմելի միձեռանի ստրուկն է ողջ թագավորության ամենավտանգավոր ընձառյուծը: Գերին Միգել դը Սերվանտես Սավեդրա անունով իսպանացին էր:

Գերության հինգ տարիների ընթացքում նա շատերին էր փախուստի խորհուրդներ տվել: Ճիշտ է, ամեն անգամ փախստականներին բռնում և ինչպես հարկն է պատժում էին, սակայն, ինչպես երևում էր, այդ Դոն Միգելի վրա ոչինչ չէր ազդում: Հարկ եղավ բոլորի աչքի առաջ շղթայել նրան իբրև անարգանք: Բայց դա նաև հարգանքի նշան էր, որովհետև ոչ բոլոր գերիներին էր վիճակվում զարդարվել արքայական պալատում ,այն էլ՝ արծաթյա շղթայով:

Առավոտից մինչև երեկո շղթայվածի մոտ էին գալիս իտալացի, պորտուգալացի, իսպանացի իր նման գերիներ: Խնդրում էին իրենց անունից հարազատներին նամակ գրել և բացատրել, թե ինչպես են գերի ընկել Ալժիրի ավազակ ծովահեններին: Եվ Միգել Սերվանտեսը, գույներ չխընայելով, նկարագրում էր, հետո գրածը բարձրաձայն կարդում: Մարդիկ արտասվելով լսում էին սեփական դժբախտության մասին և չգիտեին, թե ինչպես հայտնեն իրենց շնորհակալությունը այն բանի համար, որ նա կարողանում էր այդքան խորը զգալ իրենց ցավը:

Իսկ Սերվանտեսի հիշողությունից բնավ դուրս չէր գալիս այն օրը, երբ երկար տարիներ օտար երկրներում թափառելուց հետո, իր եղբոր՝ Ռոդրիգոյի հետ վերադառնում էր տուն, հարազատ Իսպանիա: Նա ոչինչ չշահեց, ո՛չ Պապի արքունիքում ծառայելու տարիներին, որտեղ կարդինալ Ակվավիվի քարտուղարն էր, ո՛չ էլ զինվորագրվելուց: Ավելին, Լեպանտոյի օրոք, հայտնի ծովամարտի ժամանակ, կորցրեց ձեռքը: Բայց հույսեր ուներ, իր հետ

դան—Սևան՝ 1960 թվականի նոյեմբերի 29-ին: Այնուհետև Սևանից երկաթուղագիծը շարունակվեց մինչև Ախթամար հյուրանոցը և 1965 թվականի հուլիսի 28-ին հանձնվեց շահագործման ու էլեկտրիֆիկացվեց:

1967—1972 թվականներին կառուցվեց Աղստաֆա—Իջևան երկաթուղագիծը՝ երկարությունը՝ 40 կիլոմետր, որով 1972 թվականի փետրվարի 16-ին առաջին գնացքը Աղստաֆայից ժամանեց Իջևան քաղաքը: 9-րդ հնգամյակում Իջևանից երկաթուղագիծը կհասնի մինչև Մեղրաձոր: Հրազդան—Մեղրաձոր գիծն արդեն կառուցված է:

Այսպիսով Երևան—Հրազդան—Մեղրաձոր—Համզաչիման—Ֆիոլետով—Դիլիջան—Իջևան—Աղստաֆա երկաթուղագիծը կսկսի աշխատել 1975—1976 թթ., որը անցնելու է պիոներական ճամբարների մոտով և Հայաստանի հյուսիսային շրջանների ծաղկավետ լեռնալանջերով ու ձորերով:



## ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂԻՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Երևանում և Լենինականում մանկական երկաթուղիներ կառուցելու մասին առաջին անգամ խոսվեց 1925 թվականին՝ պիոներական կազմակերպությունների ղեկավարների խորհրդակցությունում: Սակայն երկիրն այդ օրերին տնտեսական դժվարին դրության մեջ էր, որի պատճառով մանկական երկաթուղիների կառուցումը հետաձգվեց: Միայն տասը տարի անց՝

տանում էր գլխավոր հրամանատարի և Իսպանիայի փոխարքայի հանձնարարական նամակները: Գուցե դրանք օգնեն իրեն Իսպանիայում մի կանոնավոր պաշտոն գտնել:

Այն նավը, որով նրանք լողում էին, կոչվում էր «El Sol»— այսինքն՝ արև: Նավարկության վեցերորդ օրը Ալժիրի ծովահեն ավազակները, որոնք այն ժամանակ Միջերկրական ծովի սարսափն էին, գերեվարեցին «Արևը»:

Այդպես նա հայտնվեց գերության մեջ: Եվ հանձնարարական նամակները բարի դեր չկատարեցին: Դրանք կարդալով, ալժիրցիները մտածեցին, որ գերին անվանի մարդ է, և նրա համար պահանջեցին սարսափելի գլխագին: Անցան շատ տարիներ: Սերվանտեսը փրկագնով ազատվեց և վերադարձավ հայրենիք: Բայց այստեղ ևս նրա կյանքը շատ քիչ տարբերվեց ալժիրյան գերությունից:

Աշնանային մի օր Սևիլիայի արքունական բանտի երկաթյա ծանր դուռը շրխկալով փակվեց մի նոր բանտարկյալի ետևից: Նոր բանտարկյալը այստեղ սովորական երևույթ էր, և ոչ ոք նրա վրա չնայեց: Նա ուներ շուրջը նայելու լայն հնարավորություն:

Ով ասես, որ այստեղ չկար: Դրամանենգներ, մարդասպաններ, խոշոր ավազակներ: Եվ ինքը՝ Միգել Սերվանտեսը: Կտրված ձեռքի շնորհիվ, շուտով նրան դրեցին հարազատ մարդու տեղ, նրանք որոշեցին, որ ձեռքը կտրել են գողության համար: Եվ Սերվանտեսը չընդդիմացավ:

Նա բանտ էր ընկել թյուրիմացաբար: Բայց, մինչ կպարզվեր այդ թյուրիմացությունը, նա մյուսների հետ հավասար իրավունքներ ուներ: Ճիշտ է, շուտով նրան տեղափոխեցին առանձին խցիկ, և ճաշն էլ այնտեղ ուրիշ էր․ այդ խնդրում օգնեց մտերիմ ընկերոջ միջամտությունը: Իսկ մնացած հարցերում ոչինչ չփոխվեց: Նա նույնպիսի բանտարկյալ էր, ինչպես և մյուսները, և ամենաչնչին հանցանքի համար կարելի էր ենթարկել նրան սարսափելի պատիժների, օրինակ, բոլորի աչքի առաջ գանակոծել և այլն:

Սակայն ի՞նչ հանցանք կարող էր նա ունենալ: Փախչել բանտից չէր փորձում, բանտապահին սպանելը նրան հարկավոր չէր: Իր լուռ մենախցիկում ետ ու առաջ անելով նա մտածում էր: Մտածում էր իր այդքան ձախողակ և խայտաբղետ կյանքի մասին: Այն օրից, երբ վերջապես նա ազատ-



վեց գերությունից և վերադարձավ Իսպանիա, այդպես էլ նրան չհաջողվեց տեղավորվել աշխատանքի: Այդ հսկայական թագավորությունում և լայնատարած մերձօվկիանոսյան գաղութներում նրա համար չգտնվեց ոչ մի քիչ թե շատ կանոնավոր աշխատանք: Նա գիտեր, որ ամեն ինչ կարող էր այլ կերպ դասավորվել: Ինքը կարող էր դառնալ խիզախ սպա, դատավոր, քաղաքագետ: Կարող էր, բայց չդարձավ: Նա մտածում էր իր մասին: Իր զարմանալի դյուրահավատությամբ նա սպասում էր, որ այնուամենայնիվ մի օր իր բախտը կբերի, որ առջևում դեռ իրեն է սպասում ինչ-որ մի հրաշք: Այդ հրաշքի փոխարեն ահա երկաթյա դռնով և երկաթյա վանդակապատ պա-

---

1936 թվականին ձեռնարկվեց Երևանի մանկական երկաթուղու կառուցման գործը:

1937 թվականին Հրազդանի կիրճում սկսվեց և նույն տարվա հուլիսի 8-ին շահագործման հանձնվեց Հայաստանի առաջին մանկական երկաթուղին: Երկաթուղուն զուգահեռ ստեղծվեց զբոսայգի, որը հետագայում կոչվեց Խաչատուր Աբովյանի անունով:

Այն ժամանակ երկաթուղին ուներ 1300 մետր երկարություն և երկու կայարան: 1940 թվականին որոշվեց այն երկարացնել ևս 800 մետրով: Սակայն Հայրենական մեծ պատերազմը ընդհատեց շինարարական աշխատանքները: Միայն պատերազմից հետո կառուցվեց երրորդ կայարանը: Ապագայում գիծը կհասնի Երևանյան լճի ափերը, և մանկական երկաթուղին կձգվի շուրջ 5000 մետր երկարությամբ:

1937 թվականից մինչև 1967 թվականը, այսինքն՝ երեք տասնամյակների ընթացքում, Երևանի մանկական երկաթուղով երթևեկել են ավելի քան երեք միլիոն ուղևորներ: Երևանի մանկական երկաթուղու սաներից 128-ը դպրոցն ավարտելուց հետո սովորել են երկաթուղային տեխնիկումներում և ինստիտուտներում, իսկ նրանցից շատերն այսօր աշխատում են երկաթուղային տրանսպորտում:

1967 թվականից սկսվեց նաև Լենինականի մանկական երկաթուղու կառուցումը, որի աշխատանքներին ակտիվորեն մասնակցեցին երեխաները: Նույն թվականի նոյեմբերի 14-ին Լենինականի պիոներները մեծ ցնծությամբ ճանապարհեցին երկաթուղու առաջին ուղևորներին:

Երկաթուղաշինարարության հեռանկարները Հայաստանում շատ մեծ են և նրանք կիրականացվեն, երկաթուղին կբարձրանա մեր լեռնային շրջանները:

տուհանով կախարդական ամրոցը, որ նրան ուղարկեց ճակատագիրը...

Նա բոլորովին մենակ էր: Թագավորության ինչ-որ ծայրամասում ծառայում էր նրա եղբայր Ռոդրիգոն: Ծնողները մեռել էին ծայր աղքատության մեջ, համոզված լինելով, որ Միգել որդին ձախողակի մեկն է: Քույրերը տառապում էին վշտի ու աղքատության մեջ և չէին կարող նրան հիշել: Իսկ այն աղջիկը, որի հետ ամուսնացավ, բոլորովին օտար դուրս եկավ, և նրա իշխանասեր մայրը վճռականորեն կանգնեց իրենց միջև...

Քանի՜ անգամ էր նա ձեռքն առնում գրիչը, հուսալով, որ այն փառք կբերի իրեն: Ավա՜ղ: Նրա գրած բանաստեղծությունները թվում էին ծանր, իսկ կոմեդիաներ գրելը պարզապես իր գործը չէր: Մանավանդ որ Իսպանիայում ապրում էր մի մարդ, որը մեկ օրվա ընթացքում կարող էր գրել հինգ գործողություն, շարադրել հանգավորված, իսկ երեկոյան, կարծես ոչինչ չի արել, առանց հոգնության նշույլի ուղևորվել խնջույքի: Այդ երջանիկ մարդը Լոպե դե Վեգան էր, ամբողջ Իսպանիան երկրպագում էր նրան, և բոլոր նրանք, ովքեր կոմեդիաներ էին գրում, աշխատում էին նմանվել Լոպեին:

Սերվանտեսը չէր ուզում նմանվել ոչ ոքի: Նա շատ էր համառ և հպարտ: Դեռ ավելին, նա գրեթե ժամանակ էլ չուներ գրականությամբ զբաղվելու: Որպես մանր աստիճանավոր, հարկահավաք, նա մշտապես շրջագայության մեջ էր, ուտում և քնում էր որտեղ պատահեր: Երբեմն ազատ ժամանակ որևէ մեկի համար սերենադներ էր գրում...

Բայց և առանց գրելու նա ապրել չէր կարող: Դա դարձել էր կենսական պահանջ: Ահա և այստեղ, Սևիլյան բանտում, նա արագ-արագ գրի էր առնում այն ամենը, ինչ գալիս էր գլուխը: Բարեբախտաբար այստեղ նա ազատ ժամանակ շատ ուներ և շտապելու կարիք չկար:

Գրելը կլանեց նրան: Նա դադարեց զբոսանքի դուրս գալ: Իսկ երբ հետաքրքրասեր բանտարկյալները կանչում էին նրան, հարցնում, թե ինչո՞վ է զբաղված, նա մի քանիսին հրավիրում էր իր մոտ և գրածը կարդում նրանց: Բոլորը շունչները պահած լսում էին, հաջորդ օրը նորից հավաքվում: Այս անգամ ավելի շատ մարդ էր լինում: Այդպես գալիս էին ամեն երեկո, իսկ Միգելը մինչև նրանց գալը գրում էր, որպեսզի հետո բարձրաձայն կարդա:

Այդպես, առաջին անգամ իր կյանքում, նա զգաց հաջողության բերկրանքը: Այն ոչինչի հետ չհամեմատվող ուրախությունը, որ զգում է գրողը, երբ գրածը դուր է գալիս մարդկանց:

Նա գրում էր շատ արագ: Եվ այդպես արագ տարածվում էր նրա գրքի համբավը: Բանտի ղեկավարները, բանտարկյալների հարազատները, այդ մասին պատմում էին քաղաքով մեկ: Նրա գիրքը պատմում էին բերնե-բերան...

Երբ այդ գիրքը տպագրվեց, Սերվանտեսը հիսունութ տարեկան էր: Գիրքը կոչվում էր «Հնարամիտ հիդալգո Դոն Կիխոտ Լամանչեցի»: Այդ գիրքը Սերվանտեսին բերեց ոչ միայն փառք, այլև անմահություն:

Շուտով կլրանա չորս հարյուր տարի, որ աշխարհով մեկ իր Ռոսինանտի վրա արշավում է ծեր, նիհար, անմիտ, ծիծաղելի և այնուհանդերձ արտակարգ ազնիվ ասպետը:

Անչափ շատ մարդիկ են տարվել նրա սխրագործություններով և ծիծաղել նրա վրա:

Սերվանտեսի ժամանակակիցները ենթադրում էին, որ Դոն Կիխոտի մասին գրված գիրքը, ասպետների անհաշիվ սխրագործություններով լեցուն վեպերի, անվերջանալի հեղեղի ծաղրն է: Չէ՞ որ բոլորը գիտեին, որ ասպետները վերացել են դեռևս երեք հարյուր տարի առաջ:

Բայց որքան անցնում էր ժամանակը, այնքան ավելի էր վեհանում տխուր ասպետի կերպարը: Մոռացվեցին ասպետական բոլոր վեպերը, և այն, որ «Դոն Կիխոտը» դրանց պարոդիան է՝ կարելի է կարդալ միայն դասագրքերում: Իսկ մարդիկ առաջվա նման տարվում են «Դոն Կիխոտով»: Երեխա հասակում կարդում են որպես արկածային հետաքրքիր գիրք: Մեծանալով վերընթերցում են և մտածում, թե որքան իմաստություն կա այդ անմիտ թվացող ասպետի մեջ, և որքա՜ն բարություն...

Գիտնականները աշխատություններ են գրում «Դոն Կիխոտի» մասին: Գրողները վերաշարադրում են այն, դնելով այդ կերպարի մեջ ինչ-որ չափով իրենց սեփականը:

Սերվանտեսը կարողացավ իր ողջ էությունը դնել իր հերոսի մեջ՝ և՛ իր անթիվ անհաջողությունների հուշերը, և՛ ծաղրը, որ առաջացնում էր իր միամիտ հավատը: Նա նկարագրել է հարյուրավոր մարդկային ճակատագրեր, Սերվանտեսը գիտեր ոչ հորինված շատ դեպքեր, իզուր չէին ճակատագրի ծանր հարվածները: Որքա՜ն փորձություններ է տեսնում նրա Դոն Կիխոտը: Թվում է, թե դրանից հետո պետք է սթափվեր, բայց ո՛չ, հազիվ բուժելով վերքերը, սլանում է նոր փորձությանը ընդառաջ: Որովհետև նրա ուժերից վեր էր իր երդմանը դավաճանել և դադարել արդարության համար պայքարելուց: Նա, այդ ծեր, խոցոտված ասպետը, չափազանց հավատարիմ էր ինքն իրեն: Համոզվիր ինքդ, կարդա նրա մասին գրված գիրքը: Եվ Դոն Կիխոտը ընդմիշտ կդառնա նաև քո բարեկամը:

*ՄԱՐԳԱՐԻՏԱ ՅԱԽՈՆՏՈՎԱ*




## ԶԱՆԳԵՐԸ ԾՆՇԱՍՊԱՌ ԵՆ ԼԻՆՈՒՄ

Զանգերն էլ մարդկանց նման մաքուր օդի կարիք են զգում: Կիոտոյից ոչ հեռու գտնվող Ուջի քաղաքի Բիոդոին տաճարի նշանավոր զանգը 917 տարի ծառայելուց հետո ընդմիշտ լռեց: Մոտակա արդյունաբերական ձեռնարկությունների ծծումբի դիօքսիդ և այլ թունավոր գազեր պարունակող ծուխը այնպիսի կործանարար ազդեցություն գործեց զանգի մետաղի վրա, որ այն ստիպված եղան հանել: Վերականգնելուց հետո զանգը պետք է կախվի փակ շինությունում:

## ԱՆՏԱՐԿՏԻԴԱՅԻ ՋՐԵՐԻ ՏԱԿ

Բուրովին յուրահատուկ պայմաններ են: Ջերմաստիճանը —190 է: Ամբողջ տարին այստեղ մութ է և թթվածնի սով է տիրում: Կենդանաբանները այս զարմանալի աշխարհն են թափանցել սառցաճեղքերի միջով: Նրանք զարմացել են Անտարկտիդայի ջրերի տակ ապրող ձկներ և այլ կենդանի արարածներ հայտնաբերելով: Այդ կենդանի արարածները վարժվել են կյանքի արտասովոր պայմաններին: Դրանցից շատերը մինչև այժմ անհայտ են մեզ: Chalnichtreidal-ների ընտանիքին պատկանող սառցաձկները ընդհանրապես զուրկ են արյան կարմիր գնդիկներից՝ մի բան, որ շատ հազվադեպ է պատահում ողնաշարավորների հետ: Նրանց արյունը սպիտակ է, փոքր-ինչ դեղնավուն երանգով: Լողակները կրեմագույն են, իսկ ամբողջ մարմինը գրեթե թափանցիկ է: Անտարկտիդայի ձկների մեծ մասը փոքր չափերի են, միայն Discostichus ձուկը ունի 130 սմ երկարություն և 27 կգ քաշ: Սառցային ջրերի զարմանալի բնակիչների կյանքը շարունակվում է ուսումնասիրվել: Պարզվում է, որ կենդանի օրգանիզմների հարմարողականությունը ավելի մեծ է, քան մարդիկ մինչ այդ կարծում էին:

Լույս է տեսնում 1923 թվականից:



ՊԻՈՆԵՐ

№ 11 Նոյեմբեր 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Դրոշներ — Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . . 2
Կիրգիզական ՍՍՀ . . . 2
Եղնիկ մայրիկը — Զ. ԱՅՏՄԱՏՈՎ . . . 3
Իմ բարեկամները — Ս. ԷՐԱԼԻԵՎ . . . 7
Աշնան ծաղիկներ — Վ. ԿԱՐԵՆՑ . . . 9
Թարգին — Լ. ՍԱՐԳՍՅԱՆ . . . 9
Միշտ պատրաստ երբ շարունակվում է . . . 10
Մոլդավական ՍՍՀ . . . 12
Հողն իմ հայրենի — Պ. ԿՐՈՒՉԵՆՈԿ . . . 12
Որդին — Բ. ՎԼԵՍՏԱՐՈՒ . . . 12
«Արագիլներ» . . . 13
Դիրմը — Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ . . . 15
Երկարուղին Հայաստանում — Ա. ՍԱՀՐԱԴՅԱՆ . . . 18
Միգել դը Սերվանտես — Մ. ՅԱԽՈՆՏՈՎԱ . . . 20
Ինչուկ . . . 23
Ժամանց

Շապիկի առաջին էջը՝ նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԵՎՇԱՏՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 08578 Պատվեր՝ 1568: Տպաքանակ՝ 73500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 20/X 1972 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

ԻՆԴԵՔՍ՝ 77806



## ԲԱԺԱԿԻՑ՝ ՔԱՌԱԿՈՒՍԻ

Արտանկարեցեք և կտրեք թղթից այստեղ պատկերված բաժակը։ Այնուհետև բաժանելով այն չորս մասի, փորձեցեք այդ մասերից կազմել քառակուսի։




## ԲԱՆԱԼԻԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Ի՞նչ է ծածկագրված քառանկյան մեջ։ Գրքի աջակողմյան էջի վրա պատկերված է բանալին, որի օգնությամբ հնարավոր է կարդալ ծածկագիրը։



## ՀԻՆԳ ՄԱՍԻ

Տվյալ պատկերը բաժանեցեք հինգ հավասար և նման մասերի այնպես, որ յուրաքանչյուրում մեկ շրջանագիծ լինի։

Կազմեց ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ

## Խ Ա Չ Բ Ա Ռ



Նշված հարցերի բոլոր պատասխանները պետք է վերջանան «Ա» տառով։

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Քաղաք, որտեղ տեղի ունեցավ երիտասարդության համաշխարհային առաջին փառատոնը։ 2. Միութենական հանրապետություն։ 3. Բուսական գոտի։ 4. Ձեխական ավտոմեքենայի տեսակ։ 5. Գրական ժանր։ 6. Գետ՝ Սիբիրում։ 10. Քաղաք՝ Գորկու մարզում։ 11. Ռուս կնոջ անուն։ 14. Պեչորայի վտակներից։ 15. Վոլգայի վտակներից։ 18. Մարզային կենտրոն՝ ՌՍՖՍՀ-ում։ 19. Եվրոպական պետություն։ 21. Նյու-Յորքի «Մետրոպոլիտեն» օպերայի հայ երգչուհի։ 22. Եվրոպական պետության մայրաքաղաք։ 23. Քաղաք՝ Սև ծովի ափին։ 24. Քաղաք՝ Կիլիկիայում։

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

7. Հնագույն քաղաք՝ Միջին Ասիայում։ 8. Եվրոպական պետության մայրաքաղաք։ 9. Պետություն՝ Եվրոպայում։ 12. Քաղաք, որտեղ զոհվեց Կոնստանդին Զասլոնովը։ 13. Պատմական հուշարձաններով հարուստ քաղաք՝ Հնդկաստանում։ 16. Ռուսական առաջին բոլշևիկյան թերթը։ 17. Քաղաք՝ Չիլիում։ 20. Պետություն՝ Աֆրիկայում։ 22. Ազգություն։ 23. Անապատ՝ Հարավային Ամերիկայում։ 25. Քաղաք՝ Ենիսեյի ափին։ 26. Կղզի-պետություն։

Կազմեց Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆԸ